

# ՁՆԾԱՂԻԿԸ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ



Ձնծաղիկն է,
Առաջինը...

Նրա բարակ,
Քնքուշ ծիլը
Ի՜նչ տանջանքով
Ձյունը ճեղքել
Ու ձյան տակից
Դուրս է եկել,
Դարձել ծաղիկ
Նուրբ ու բարի,
Որ գարնան գալն
Ազդարարի...

Սակայն շուրջը
Սառույց է, ձյուն,
Ցուրտ քամին է
Դեռ հեծեծում,
Վայում է դեռ
Հողմը վայրի,
Որ ձնծաղկի
Թևերն այրի,
Բայց նա կողին
Ապավինած,
Չի խոնարհվում
Քամու դիմաց:
Ու կարճ է շատ
Կյանքը նրա,
Մեռնում է նա

Ոտքի վրա,
Բայց իր բախտից
Չի տրտնջում...
Ժպտում է նա
Վերջին շնչում,
Ժպտում է նա
Շող ու շաղով...
Ա՜խ, նա գիտի,
Որ իր մահով
Ուրիշ-ուրիշ
Ծաղիկների
Ճանապարհն է
Ինքը հարթում
Ու գարուն է
Բերում մարդուն...

# ՇԱՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Ի. ՊԻՎՈՎԱՐՈՎԱ



*Դպրոցում «Ինչպես եմ օգնում մայրիկիս» թեմայով մեզ շարադրություն հանձնարարեցին: Ես վերցրեցի գրիչն ու սկսեցի գրել. «Ես միշտ օգնում եմ մայրիկիս, ավլում եմ հատակը և լվանում ամանեղենը: Երբեմն էլ թաշկինակներ եմ լվանում»:*

*Ուրիշ ի՞նչ գրեմ: Ես նայեցի Մարինային: Նա նորանոր տողեր էր շարում տետրի մեջ: Ես հանկարծ հիշեցի, որ մի անգամ լվացել եմ իմ գուլպաները և շարունակեցի. «Բացի այդ, գուլպաներ ու կիսագուլպաներ եմ լվանում»:*

*Այլևս չգիտեի ինչ գրել: Բայց հո չէի՞ կարող մի քանի տողանոց շարադրությունը հանձնել ուսուցչուհուն, և ստիպված ավելացրի. «Լվանում եմ նաև շապիկներ ու վերնաշապիկներ»:*

*Նորից շուրջս նայեցի: Բոլորն էլ շարունակում էին գրել: Հետաքրքիր է, այդքան երկար ի՞նչ էին գրում: Կարելի էր մտածել, որ նրանք առավոտից երեկո օգնում են մայրիկին: Զանգը չէր հնչում, և ես ստիպված շարունակեցի. «Ես լվանում եմ նաև իմ ու մայրիկի զգեստները, անձեռոցիկներն ու ծածկոցները»: Զանգը համառորեն չէր հնչում: «Ես շատ եմ սիրում սփռոցներ ու վարագույրներ լվանալ»,— գրեցի ես:*

*Վերջապես զանգը հնչեց:*

*Ես «հինգ» ստացա: Ուսուցչուհին բարձրաձայն կարդաց իմ շարադրությունը: Նա ասաց, որ իմ գրածը*

# ՏՈՆԻ ՕՐԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Մարտի ութի առավոտյան
Տատը ելավ բացեց սեղան,
Մրգեր շարեց, գաթա դրեց,
Դեռ մի փարչ էլ գինի լցրեց,
Որ թոռները
Հյուր գան բարով,
Ասեն՝ տոնդ շնորհավոր:
Տատն ինքն իրեն լուռ շշնջաց.
«Թոռնիկներս հիմա կգան,
Ներս կմտնեն ծաղիկ փնջած,
Համբույր կառնեն,
Համբույր կտան»:
Բայց թոռները դեռ չեն գալիս,
Տատն ինքն իրեն սիրտ է տալիս.
«Քիչ էլ, քիչ էլ որ սպասեմ,
Ներս կմտնեն, բարև կասեն:
Համբույր կտան,
Համբույր կառնեն,
Վա՜յ ձեզ մատաղ անուշ գառներ»:
Բայց թոռները չկա՜ն, չկա՜ն:
«Չէ, ուր որ է, հիմա կգան,
Բարև կտան, կասեն՝ ա՜յ տատ,
Ի՞նչ համով է թխած գաթադ»,—
Չէ՛, չեն գալիս, մութ է բակում,
Եվ աչքերն է տատը փակում,
Որ երազում տեսնի հանկարծ.
— Վայ, գառներ ջան,— ասի
նրանց,—
Բա չի՞ հիշի տատին թոռը
Գոնե, գոնե այս տոն օրը:



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

բոլորից շատ է դուր եկել իրեն և ինքը անպատճառ կկարդա այն ծնողական ժողովի ժամանակ:

Ես մայրիկին խնդրեցի, որ նա չգնա ծնողական ժողովի: Ես հնարեցի, որ կոկորդս ցավում է, բայց մայրիկը անդրդվելի էր, հայրիկին հանձնարարեց ինձ մեղրով կաթ տալ և ինքը գնաց դպրոց:

Առավոտյան նախաճաշի ժամանակ այսպիսի զրույց տեղի ունեցավ հայրիկիս ու մայրիկիս միջև:

ՄԱՅՐԻԿ.— Սեմյո՛ն, դու գիտե՞ս, որ մեր աղջիկը հիանալի շարադրություններ է գրում:

ՀԱՅՐԻԿ.— Դա ինձ չի զարմացնում, նա հրաշալի հորինել գիտե:

ՄԱՅՐԻԿ.— Ես չեմ կատակում, Վերա Եվստիգնիևան նրան գովեց, ասում է՝ ես շատ ուրախ եմ, որ ձեր աղջիկը սիրում է սփռոց ու վարագույր լվանալ:

ՀԱՅՐԻԿ.— Ի՞նչ...

ՄԱՅՐԻԿ.— Սեմյո՛ն, ճիշտ որ հրաշալի է, չէ՞ (դառնալով դեպի ինձ), ինչո՞ւ դու առաջ այդ մասին ինձ ոչինչ չես ասել:

— Դե՜... ես ամաչում էի,— ասացի ես,— հետո էլ մտածում էի, որ դու թույլ չես տա:

— Ամաչելու ոչինչ չկա,— ասաց մայրիկը,—հենց այսօր լվա՛ վարագույրները, արդեն կեղտոտվել են:

Իմ աչքերը զարմանքից լայնացան: Վարագույրներն այնքան մեծ էին, որ ես տաս անգամ կարող էի փաթաթվել նրանցով: Բայց հրաժարվելու համար շատ ուշ էր:

Ես սկսեցի օճառել սկզբում վարագույրի մի մասը, հետո՝ մյուսը: Մինչև կեսն օճառում էի, մյուս մասի վրա արդեն օճառ չէր մնում: Ես հալից ընկա այդ վարագույրների պատճառով: Հետո էլ մաս-մաս սկսեցի պարզաջրել: Մի մասը քամում էի, չքամած ծայրից ջուրը թափվում էր ու նորից թրջում: Վերջապես ես բարձրացա աթոռակին ու սկսեցի վարագույրը կախել պարանից: Մի ծայրը հազիվ մի կերպ կախում էի պարանից, մյուս կեսը կախվում էր գետնին: Մեկ էլ ամբողջ վարագույրը ընկավ գետնին, ես էլ՝ վարագույրի վրա և ոտքից գլուխ թրջվեցի: Ստիպված վարագույրը նորից քարշ տվեցի լողասենյակ:

Ամբողջ օրը վարագույրներից ջուր էր կաթկթում: Վարագույրների տակ դրեցի մեր տան բոլոր կաթսաներն ու թասերը, հետո թեյնիկը, երեք շիշ, թեյի գավաթներն ու ափսեները, ոչինչ չէր օգնում, ջուրը շարունակում էր թափվել հատակին: Եվ որքան էլ որ տարօրինակ լինի, մայրիկը գոհ էր:

— Դու հրաշալի լվացիր,— կրկնակոշիկները հագած՝ խոհանոցում ետ ու առաջ քայլելով ասում էր նա:— Ես չգիտեի, որ դու այդքան ընդունակ ես: Վաղը կլվանաս սփռոցը:

Թարգմ. ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆԻ

## ԲՈՂԲՈՋՆԵՐ

*ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ*

Արթնացե՛ք, բողբոջնե՛ր,
Դուք գարնան մանկիկնե՛ր,
Քնով մի՛ անցեք,
Արթնացե՛ք։
Բացե՛ք ձեր աչքերը,
Թող ծաղկեն ծառերը,
Երգեն ծիծառները,
Արթնացե՛ք։
Արևը կանչում է,
Առվակը՝ կարկաչում,
Արթնացե՛ք, բողբոջնե՛ր,
Արթնացե՛ք։

## ԳԱՐՆԱՆ ՁԱՅՆԵՐԸ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Գարնան ձայներ են լսվում
Ծլվլոցում թռչնակի,
Կարկաչներում գետակի,
Նուրբ լարերում ջութակի...
Գարնան ձայներ են լսվում
Բառաչներում գառների,
Բողբոջներում ծառերի
Ու տաք շնչում բառերի,
Որ հյուսվում են այս թղթին
Որպես գարնան մեղեդի։

*Նկ. ՅՈՒՐԱ ԽԱՉԱՆՅԱՆԻ*

# Մ Ա Յ Ր Ս

*Երբեմն առավոտները շուտ եմ արթնանում, որովհետև էլեկտրական լույսը խտուտ է տալիս աչքերս։ Դրսում դեռ կիսամութ է, իսկ սենյակում փոքրիկ սեղանի մոտ նստած է մայրիկը։ Նրա գրիչը արագարագ շարժվում է աշակերտների տետրերի վրայով։ Դա սովորական պատկեր է ինձ համար։ Ես մայրիկիս երբեք անգործ չեմ տեսել։ Երբ դեռ փոքր էի, կարծում էի մայրիկները չեն քնում ու չեն հանգստանում։*

*Մայրիկը դպրոցից վերադառնում է տուն, կերակրում է մեզ, զբաղվում է տնային բազմաթիվ գործերով։ Թվում է, օրվա ժամերը չեն բավականացնելու նրան, բայց նա միշտ ժամանակ է գտնում ստուգելու, թե ինչպես ենք կատարել տնային հանձնարարությունները, ստուգում է օրագրերը։ Նա բարի է, հոգատար, բայց խստապահանջ։ Երբ որևէ մեկը մի սխալ արարք է թույլ տալիս, մայրիկի դեմքը դառնում է լուրջ ու մտածկոտ, թվում է, նա էլ երբեք չի ծիծաղի։*

*Իսկ երբ հյուրեր են գալիս, մայրիկը աշխուժանում է, նրա դեմքին խաղում է ուրախ ժպիտը, հյուրասիրում է նրանց ու կատակում։ Հյուրերը մեծ մասամբ նրա նախկին աշակերտներն են, որոնք նրան չեն մոռանում։ Գալիս են նրա հետ խորհրդակցելու, պատմում են իրենց գործերի մասին, մտաբերում դպրոցական տարիները։ Եվ մայրիկը իսկույն փոխվում է։ Կարծես քիչ առաջվա հոգսերով ծանրաբեռնված մայրիկը չլինի, այլ նրանց հասակակիցը։*

*Բոլորն են սիրում իմ լավ մայրիկին։*

*ՍԱՄՎԵԼ ՀՈՍՅԱՆ*

*8-րդ դաս. աշակերտ*

*Թումանյանի շրջ., գ. Ննոց*

# ՏԱՏԻԿԻ ՍՆԴՈՒԿԸ

*ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ*

Վաղ առավոտյան մի խումբ պիոներներ եկան և սկսեցին խնդրել.

— Մեզ հին իրեր տվեք, եթե կարելի է, ջարդոն ենք հավաքում:

— Քեռի՛, շատ ենք խնդրում, հնոտինե՛ր տվեք մեզ:

— Նայեմ՝ տեսնեմ,— ասացի ես և խոհանոց մտա:

Առաջին իրը, որը հին ու անպետք թվաց՝ տատիկիս սնդուկն էր: Ես զննեցի այն, կարծես առաջին անգամ էի տեսնում, և հիշեցի տատիկի պատմածը:

Սնդուկը կաղնեփայտից էր, հաստակն ու կափարիչը երեքական, կողքերը երկուական տախտակից: Կափարիչը սնդուկին էր միանում թիթեղի նեղ շերտով: Ձևայած անկյուններում սպառնալիորեն ցցվել էին ժանգոտած մեխի գլուխներ և կաշվե ինքնաշեն բռնակներից միայն խղճալի կտորներ էին մնացել, խարխլվել էր հատակի տախտակներից մեկը, բայց և այնպես դա իսկական սնդուկ էր:

...1914 թվականին, երբ սկսվեց Առաջին համաշխարհային պատերազմը, իմ Շուշան տատը, կամ ինչպես անվանում էին նրան՝ Սուրմալեցի Աղեն, արդեն ապրում էր Իգդիր քաղաքում: Պատերազմի լուրը բոլոր մարդկանց հանկարծակիի բերեց, առանձնապես հայերին, որովհետև ամեն վայրկյան կարող էին նրանց տեղահան անել: 1915 թվականի ապրիլին թուրքական կառավարությունը հայերին տեղահանելու և ոչնչացնելու գաղտնի հրաման արձակեց:




Ահա այդ ժամանակ իմ Օհանես պապը շինեց այս սնդուկը, որպեսզի նրա մեջ թաքցնեն տան սպասքը՝ ոսկյա և արծաթե ամանեղենը: Գաղթել ու գաղթել — այսպիսին էր մեր ժողովրդի ճակատագիրը:

1918 թվականին, մեր ընտանիքը, իսկ ավելի ճիշտ՝ տատիս ընտանիքը, բազմաթիվ հայ տարագիրների հետ, սկսեց ճանապարհի պատրաստություններ տեսնել: Սնդուկին կաշվե բռնակներ ամրացրին և ոտքով ճանապարհ ընկան: Սահմանապահ ուղեկալ չհասած, նրանք սնդուկը բարձեցին ճռճռացող մի սայլի և բարեհաջող անցան ռուս-թուրքական սահմանը:

Սահմանը անցնելիս անվտանգության համար սնդուկի մեջ դրին լաթերի մեջ փաթաթած իրենց նորածին որդուն, որին բոլորը «Խունճուճ» էին անվանում:

...1920 թվականի նոյեմբերին, երբ Երևանում փողփողացին առաջին կարմիր դրոշները, սնդուկի մեջ դասավորեցին երեխաների հին սպիտակեղենը և սնդուկը հրեցին մահճակալի տակ:

Հետո սնդուկը տատիկի հետ միասին, այն ժամանակ հրաշք համարվող առաջին ավտոմեքենաներից մեկով, ճանապարհորդեց Ապարան, Էջմիածին, Լենինական, մի քանի օր «հյուրընկալվեց» Թբիլիսիում և նորից վերադարձավ Երևան:

Սնդուկի մեջ նորից հազվադեպ օգտագործվող ամանեղեն էր պահվում, բայց, իհարկե, ո՛չ ոսկյա, ո՛չ էլ արծաթե (դրանք բոլորը հափշտակել էին թուրք ենիչերիները), բայց դարձյալ փակվում էր փոքրիկ մի կողպեքով, որովհետև տատիկը միշտ հյուրերի համար հոգեպահուստ էր ունենում՝ կտրած ընկույզ ու չամիչ կամ խոնավ շորի մեջ փաթաթած մի կտոր բաստուրմա:

30-ական թվականների վերջին սնդուկը գնացք դրին և տատիկի հետ ուղարկեցին Մոսկվա:

Մեր ընտանիքը տեղափոխվել էր Մոսկվա և բնակվում էր Պոտիլիխում: Այժմ էլ տատիկը սկսեց սնդուկի մեջ սպիտակ հացի պաքսիմաթ հավաքել՝ կոտլետի կամ ով գիտե թե ինչի համար:



ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

# ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

(Անտիպ գրառումներից)

*Արգինայում, ավերակ եկեղեցու մի կայուն պատի ծայրին արագիլը բույն է հյուսել: Մարտին քեռուս տանն էի: Մարտի 7-ի առավոտն էր. եղանակը հուզված՝ ձյունախառն քամի, բորան:*

*Քեռիս ասում էր, որ ինչքան մեծ մրրիկ լինի, արագիլները կգան, անպատճառ կգան, իրենց բները կվերադառնան, դարավոր փորձը ասում է՝ «յոթին չի գա, ընենին չի մնա և մարտի ութին՝ լակլակը բնին»:*

*Քեռակինը ասում էր, որ չի գա, գեշ եղանակ է, մի տեղ կանգ կառնեն, կմնան, կուշանան մի երկու օրով, և վիճում էին:*

*Երեկ եղավ նույն հուզված օդը, գիշերը՝ նույնպես: Մենք քնեցինք, բայց առավոտ վաղ լսեցինք լակլակների կանչը՝ լա՛կ, լա՛կ... Ելանք դուրս նայեցինք, տեսանք՝ արագիլները կանգնած են իրենց բույնի վրա:*

---

— Ինչո՞ւ այս անպետքությունը դուրս չեք նետում,— ասում էին հարևանները՝ տգեղ սնդուկին դիպչելիս:

— Գետնին դրված ամեն իր անպետքություն չէ,— պատասխանում էր տատիկը: Նա սնդուկի տակ կավե փոքրիկ սալիկներ շարեց:

...1941 թվականին սկսվեց Երկրորդ համաշխարհային պատերազմը: Սնդուկը մեզ հետ Մոսկվայից էվակուացվեց սկզբում Կույբիշև, իսկ հետո շոգենավով՝ Աստրախան:

Այնտեղ մենք մեր հարևաններից մի քիչ «հարուստ» էինք, որովհետև սև հացի օրաբաժնից բացի, ամեն օր տատիկի սնդուկից ստանում էինք մեկական փոքրիկ պաքսիմաթ:

Պատերազմի վերջերին սնդուկը նորից հայտընվեց Երևանում: Այստեղ այն վերանորոգվեց, ներկվեց և 1946 թվականին «Դուգլաս» օդանավով նորից ուղարկվեց Մոսկվա: Այդ ժամանակից սկսած՝ սնդուկի մեջ միայն հնամաշ կոշիկներ էին պահվում, փոքրիկ կողպեքով փակված:

1954 թվականին Շուշան տատը մահացավ: Նա բոլորել էր իր յոթանասունհինգ տարին, իսկ սընդուկն՝ իր քառասնամյակը:

Մահվանից առաջ տատս մեզ տվեց սնդուկի բանալին, որը պահում էր զգեստի տակի հինգերորդ ծալքավոր կիսափեշի գրպանում, և ասաց, որ այնտեղ եղածով կկարողանանք իրեն պատվով հողին հանձնել:

Երբ սնդուկը բացեցինք, իմ հին կոշիկներից մեկում թաշկինակով ագուցված դրամ գտանք: Տատիկին թաղեցինք Մոսկվայի հայկական գերեզմանոցում: Նրա հուղարկավորությանը մասնակցում էին 120 հոգի, որոնք հետո եկան՝ քսան մետրանոց մեր բնակարանը, որպեսզի տատիկի հիշատակի համար բաժակ բարձրացնեն:

Մի քանի տարի անց, մենք նոր բնակարան ստացանք Կուտուզովի պողոտայում և, իհարկե, մեզ հետ տարանք նաև սնդուկը:

Այսօր ես նայեցի օրացույցին. սնդուկը լրիվ հիսուն տարեկան է՝ իսկական հոբելյար:





*Աշնանը, երբ կռունկները չվում են երկնքով և մարդկանց սրտերում թախիծ է տարածվում, ձմեռը մոտալուտ է: Եվ կռռալով գնում են, հավաքելով ուրիշ կռունկների, որոնք դաշտերից, ձորերից, ճահիճներից միանում են կարավանին:*

*Ասում են, որ կռունկները երբեք այնքան սուր հիշողություն չունեն, այնքան լավ աշխարհագետ չեն, նրանց գլուխը կանգնում է մի փոքր սև թռչուն, ոչ իրենց տեսակից, սա է առաջնորդում կռունկներին: Արդյոք ի՞նչ պայմանով են նրա հետ համաձայնվել. վարձե՞լ են, փոխադարձ օգնությո՞ւն ունեն, թե՞ բնությունն է սահմանել,— հայտնի չէ:*

*Իսկ գարնանը, երբ վերադառնում են կռկռալով, երկնքում և մարդկանց սրտերում տարածվում է մի անուշ ուրախություն՝ գարնան մոտալուտ գալը...*

---

Հիմա սնդուկի մեջ իմ տասնվեց ուսումնառության տարիների դեղնած տետրերն են: Ես մատս քսեցի սնդուկի փոշոտ կափարիչին և հիշեցի, որ ինչ-որ ժամանակ նրա մեջ են դրել իմ դեռևս նորածին հորը և Իգդիրից բերել Երևան:

Եվ հանկարծ հիշեցի, որ դռան մոտ ինձ սպասում է կարգապահ պիոներների խումբը: Հետո վերցրի բոլորովին վերջերս գնած ալյումինե թեյամանը և գնացի նրանց մոտ.

— Վերցրե՛ք, երեխանե՛ր, սա ձեզ պետք կգա:

«Տնտեսական ապրանքների ցանկացած խանութում թեյաման կարող ես գտնել,— մտածեցի ես,— իսկ սնդուկ...»

Եվ այն էլ այսպիսի սնդուկ, որը մեր ընտանիքի համար սուրբ մասունք է, նրա պատմության անխոս վկան:

Դուրը ծածկելուց հետո ես սկսեցի խոնավ լաթ որոնել, որպեսզի տատիկիս սնդուկի փոշին մաքրեմ:



**«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1971 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց արձակագիր Հրանտ Մաթևոսյանին «Հացը» և «Կանաչ դաշտը» պատմվածքների համար:**



**«Պիոներ»-ի 4-րդ և 12-րդ համարների շապիկների և «Երամից ընկածը» պատմվածքի նկարազարդման համար նկարիչ Հակոբ Հակոբյանը արժանացավ 1971 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:**



# ԱՆՀԱՎԱՏԱԼԻ ԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆ

**«Երկրորդ կյանք» գրքից**

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

Այդ աշնանը քաղաքից մեզ համար բերել էին հայոց լեզվի նոր դասագիրք։ Շապկի վրա տպագրված էր տաճկական ֆես դրած մի մարդու դիմանկար։ Ես պարոն Արամին հարցրի.

— Ո՞վ է էս ֆեսավորը։

— Մինաս Չերազն է,— պատասխանեց ուսուցիչը։— Այս դասագրքի հեղինակը։

— Սո՞ւրբ է։

— Ոչ։ Մեզ նման հասարակ մարդ է։

Զարմանքից ես տակնուվրա եղա։ Մինչև այդ օրը ես կարծում էի, թե գրքերը գրվում են աստծու կամ սրբերի ձեռքով։ Դրա համար էլ սուրբ գրքին ասում են «Աստվածաշունչ»։ Դրա համար էլ հայոց այբուբենը հնարողը կոչվում է սուրբ Մեսրոպ Մաշտոց։ Բանից պարզվեց, որ հասարակ մարդն էլ կարող է գիրք հնարել...

— Եթե ես մեծանամ, կարո՞ղ եմ գիրք գրել։

— Կարող ես,— պատասխանեց պարոն Արամը։— Քո շարադրություններից երևում է, որ դու, եթե շատ աշխատես, գրող կդառնաս։

Գրող դառնա՛լ... գիրք հնարե՛լ... Դա ինձ թվաց այնքան անհասանելի մի երջանկություն, որի առաջ նսեմանում էին զորավար դառնալու երազանքներս։ Դու ո՞նց կարող ես դառնալ քաջ զորավար, երբ գութանի ոժտուն անգամ կարգին քշել չես կարող։ Դու, որ լծից վայր ես գլորվում, ո՞նց պիտի նժույգ նստած արշավես թշնամու վրա... Չէ՛, ավելի լավ է գրող դառնաս։

Պարոն Արամն այդ օրը մեզ հետ անցավ նոր դասագրքում տպագրված մի բանաստեղծություն, որ կոչվում էր «Հատված Անուշ»-ից։

«Կանչում է կրկին, կանչում անդադար
Էն չքնաղ երկրի կարոտը անքուն,
Եվ թևերն ահա փռած տիրաբար,
Թռչում է հոգիս, թռչում դեպի տուն»...

Պարոն Արամն ասաց, որ այդ բանաստեղծությունը հորինել է «Ախթամարի» հեղինակ Հովհաննես Թումանյանը, որ շատ մեծ բանաստեղծ է և նստում է Թիֆլիս քաղաքում։ Նա մեզ հավատացրեց, որ մենք էլ, եթե շատ աշխատենք, կարող ենք ոտանավոր գրել։

— Հապա, ո՞վ ձեզանից կփորձի ոտանավոր գրել,— հարցրեց պարոն Արամը։

Մենք իրար երես նայեցինք։ Ձեռք բարձրացրինք ես, Տեր-Մարտիրոսի Գեղամն ու Դադոյի Նշանը, որ մեզանից մի քանի տարով մեծ էր ու համարվում էր շատ ընդունակ աշակերտ։ Ուսուցիչը մեզ պատվիրեց այս երեկո այդ ոտանավորները գրել և վաղ առավոտյան ներկայացնել իրեն։ Միայն մի պայմանով, որ մեր գրած ոտանավորները չլինեն արտագրություն, չնմանվեն Թումանյանի ոտանավորին, այլ բոլորովին ինքնուրույն միտք արտահայտեն։ Այդ «ինքնուրույն» բառը, որի իմաստը պարոն Արամը բացատրեց, ինձ անչափ դուր եկավ։ Ուրեմն ես պետք է ինքնուրույն ոտանավոր գրեմ։ Դա կլինի շատ արտասովոր մի երջանկություն։

Այդ գիշեր մերոնք պառկեցին քնելու, իսկ ես ձեթի ճրագի տակ նստեցի, որ բանաստեղծություն գրեմ։ Ինքնուրույն։ Առանց կրկնելու ուրիշներին։ Բայց իմ գլխում ոչ մի ինքնուրույն միտք չկար։ Ես չգիտեի, թե ինչ գրեմ։ Բանից պարզվեց, որ դա այնքան էլ հասարակ բան չէր։ Գրեցի երկու տող. «Ծիծաղախիտ Վանա ծովի փոքրիկ գյուղից առափնյա», բայց անմիջապես հիշեցի, որ դա Թումանյանն է գրել։ Գրեցի «Վանա ծովի ափերով քայլամոլոր գնում եմ» և իսկույն հիշեցի, որ այդպիսի մի բան տպագրված էր մեր անցյալ տարվա դասագրքում։ Հապա ես ի՞նչ գրեմ։ Եթե գրեմ «Ծիծաղախիտ Արչակ լճի փոքրիկ գյուղից առափնյա» էլի կստացվի նույնը, չնայած որ իմ մտքում ոչ թե Թամարի սիրահար տղան էր, այլ ռես Միրզայի գոմեշը, որի ետևը կզլեցիք եղեգնյա փող էին անցկացրել։

Ուրեմն ի՞նչ գրեմ, ի՞նչ գրեմ, ի՞նչ գրեմ... Գրելու կատաղի ցանկություն ունեմ, բայց ոչ մի բան չի գալիս միտքս, այսինքն՝ ինքնուրույն բան։ Հո չե՞մ կարող վաղ առավոտ գնալ դպրոց ու խոստովանել, որ ինձանից գրող դուրս չի գա։

*Մայրս մի քանի անգամ արթնացավ և ինձ խորհուրդ տվեց պառկել քնել:*

*— Սպասի՛ր,— բարկանում էի ես մորս վրա:— Ես գործ ունեմ:*

*— Ա՛յ տղա, ի՞նչ գործ ունես,— քնաթաթախ ասում էր մայրս:— Դու քո դասերը սերտում ես տեղաշորի մեջ:*

*Մենք ունեինք մի խոշոր սև կատու, որը նույնպես զարմացել էր, թե ինչո՞ւ ես չեմ պառկում քնելու, նստել էր կողքիս և իր զարմանքն արտահայտում էր միալար մռռալով: Հանկարծ գլխումս ծագեց մի ծիծաղելի միտք ...արի ոտանավոր գրեմ կատվի մասին: Եվ գրեցի.*

«Տեսե՛ք, տեսե՛ք,
Մեր մեծ կատուն,
Ի՜նչ մաքրասեր
Եվ ի՜նչ արթուն:
Վառարանի
Կողքին նստած,
Սև կռնակին
Պոչն ոլորած,
Ոնց է մռռում,
Նայում ծակին.
Մահ է նյութում
Խեղճ մկնիկին»:

*Իհարկե, ես մկնիկին բնավ չէի խղճում և միշտ ուրախանում էի, երբ մեր կատուն մուկ էր բռնում, բայց այս դեպքում ինձ համար կարևոր էր ոտանավորը մի կերպ ավարտել և ջհանդամը թե «Խեղճ մըկնիկին» բառերը կեղծ դուրս եկան:*

*Մյուս օրը վաղ առավոտյան դպրոց վազեցի, ինքնուրույն ոտանավորս պայուսակիս մեջ: Պարզվեց, որ տերտերի Գեղամն արտագրել էր դասագրքից մի ուրիշ ոտանավոր, իսկ Նշան Դադոյանը բոլորովին չէր գրել և ասաց, որ ինքը չի ցանկանում գրող դառնալ:*

*Պարոն Արամն իմ ոտանավորը բարձրաձայն բոլոր աշակերտների առաջ գովեց և ասաց.*

*— Հայաստան Եղիազարյանը գրող կդառնա: Ոչինչ, որ գրածին խառնել է ռուսահայերեն: Ավելի լավ. մենք պետք է աշխատենք միացնել մեր երկու լեզուները:*

*Ես, ճիշտն ասած, բնավ չէի նկատել, որ գրել եմ ռուսահայերեն: Երևի այդ ստացվել էր նրանից, որ ես իմ ոտանավորը գրել էի Թումանյանի «հատվածը» դպրոցում անցնելուց հետո, նրա թարմ տպավորության տակ: Ռուսահայերենն իմ աչքում ուներ շատ մեծ հմայք: Թերևս նրա համար, որ Խառակոնիսում իմ տեսած առաջին ֆիդային ռուսահայերեն էր խոսում՝ «հենց» ու «ոնց»... Թերևս նրա համար, որ իմ կարդացած առաջին գրքերը՝ «Խենթը» և «Աշոտ Երկաթը» գրված էին ռուսահայերեն... մենք մեր դպրոցում ռուսահայերենն ընկալում էինք իբրև հայ ազգի ազատագրության պայքարի լեզու և սիրում էինք:*



*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*




ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



իա Տաղինի № 18 տան 12 բնակարանում բնակվող սինյոր Մոլտենին չափազանց մտահոգված էր: Նա «Կրկնակի բևեռ» մակնիշի մի հրաշալի սառնարան էր ապառիկ վերցրել և արդեն երկու ամիս էր չէր կարողանում մուծել սահմանված ամսավճարը: Այսօր գրասենյակից զանգահարեցին ու ասացին. «Եթե ձեր պարտքը չվճարեք, սառնարանը ետ կտանենք»: Ամիսը նոր էր կիսվել, իսկ սինյոր Մոլտենին արդեն մի լիրան ինչ է, չուներ:

Այդ առավոտ նա շատ երկար նայեց սառնարանին, ապա քնքշորեն շոյեց նրա ողորկ մակերեսը ու տրտմությամբ, կարծես դիմացինը կենդանի արարած լիներ, ասաց. «Թանկագինս, վախենում եմ, որ շուտով հարկադրված լինենք բաժանվել: Առանց քեզ տունս կդատարկվի»:

Սառնարանը սառույցի պես լռում էր: Բայց սինյոր Մոլտենին ամեն բան հասկացավ. «Դե, իհարկե, քո գործը սառնություն արտադրելն է և ոչ թե փող տալը»:

Նույն այդ առավոտ սինյորա Սանդրելին (նա ապրում էր հինգերորդ հարկում, իսկ սինյոր Մոլտենին՝ չորրորդ) բացելով իր սովորական, առանց անիվների «Պինգվին» սառնարանը, չափազանց մանր մարդուկներ տեսավ այնտեղ: Նրանցից մեկը նստած էր ձվի վրա: Բոլորը արծաթագույն սկաֆանդրներով էին, իսկ մինչև ուսերն իջած թափանցիկ ու փայլուն սաղավարտների տակից երևում էին նրանց բաց մանուշակագույն մազերը և դեղին, կարագագույն դեմքերը: Նրանք իրենց կանաչ աչիկները սևեռեցին սինյորա Սանդրելիին ու անշարժացան: Միայն ձվի վրա հարմարավետ տեղավորված մարդուկը սիրալիր թափահարեց ձեռքը:

— Օ՜, տեր աստված, սրանք հո մարսեցինե՞ր են,— բացականչեց սինյորա Սանդրելին:— Մտքովս երբեք չէր անցնի, թե կարող են նրանք այսքան փոքր լինել: Է՜յ, դուք ի՞նչ գործ ունեք իմ սառնարանում: Իսկ դու իջի՛ր ձվի վրայից, թե չէ կջարդես:

Մարդուկը չնեղացավ ու նորից թափահարեց ձեռքը: Սինյորա Սանդրելին վճռական կին էր. նա երկու մատով բռնեց մարդուկին ու դրեց պահածոյի տուփի վրա:

— Մարսեցի ես, ինչ ես, մեկընդմիշտ հիշիր, այստեղ կարգադրողը ես եմ:

— Դռնակը փակեք, տաք օդ է ներս լցվում,— խստությամբ ասաց մարդուկը:

— Ինչ ասացի՞ր:

— Մենք եկել ենք մի մոլորակից, որտեղ ամեն ինչ սառցակալված է, և սովոր չենք ձեր ջերմությանը: Ուստի, ինչպես հրամայվեց, փակե՛ք դուռը:

— Կուզեի տեսնել, թե այդ ո՞վ է համարձակվում ինձ հրամայել,— ինքն իրենից ելնելով բղավեց սինյորա Սանդրելին:— Նախ և առաջ, անուշիկնե՛ր. բացատրե՛ք, թե ինչպես մտաք իմ բնակարանը:

— Խոհանոցի լուսամուտից, որը գազի հոսքից վախենալով, գիշերները միշտ բաց եք թողնում:

— Ինչպես տեսնում եմ, լավատեղյակ եք:

— Անշուշտ: Մինչ ներխուժումը, ամիսներ շարունակ, ուսումնասիրում էինք ձեր լեզուն ու սովորությունները: Փակե՛ք, խնդրեմ, դռնակը:

— Եվ ներխուժման համար դուք ընտրեցիք հատկապես իմ սառնարանը:

— Այդ ձեզ չի վերաբերում: Միայն իմացե՛ք, որ մենք գրավել ենք այս շենքի բոլոր սառնարանները: Փակե՛ք, վերջապես, դուռը և հանգիստ թողեք մեզ:

— Ո՛չ էլ կփակեմ: Ասենք, չէ՞, կփակեմ և կանջատեմ հոսանքը: Տեսնեմ, թե հետո ի՞նչ կհրամայեք:

Մարդուկներից մեկը, աթոռը մատնացույց անելով, (գոնե այդպես թվաց սինյորա Սանդրելիին) ասաց.

— Տեսե՛ք, թե ինչ կկատարվի նրա հետ:

Մեկ էլ աթոռը բոցավառվեց, առանց ծուխ արձակելու, և հինգ վայրկյանում վերածվեց մոխրակույտի:

— Եթե դուք հոսանքը անջատեք, մենք կայրենք ձեր տունը:

Սինյորա Սանդրելին զասումով շրխկացրեց դռնակը և գնաց զանգահարելու ոստիկանատուն.

— Սինյո՛րա Ալֆա, պատկերացնո՞ւմ եք...

— Ի՞նչ է պատահել, սինյո՛րա Սանդրելի, ջերմակարգավորիչը չի՞ աշխատում:

— Ի՞նչ ջերմակարգավորիչ:

Եվ նա պատմեց եղելությունը: Պարզ է, բարապանը անմիջապես զանգահարեց բոլոր բնակիչներին: Մի քանի րոպեի ընթացքում առաջին հարկից մինչև վերջին հարկի բոլոր բնակարաններում բացվում ու շրխկալով փակվում էին սառնարանների դռները: Այդ անելիս բնակիչներից ոմանք ճչում էին սարսափից, ոմանք՝ զարմանքից, ոմանք էլ հիացմունքից:

Հասկանալի է, որ պարոն Մոլտենին նույնպես վազեց դեպի իր «Կրկնակի բևեռը»: Սառնարանում, բազմաթիվ արծաթագույն սկաֆանդրավոր օտարմոլորակցիների մեջ, նստած էր մի ավելի խոշոր, ոսկյա սկաֆանդրով մարդուկ:

— Դուք սրանց գլխավորն ե՞ք,— հետաքրքրըրվեց սինյոր Մոլտենին, ետ պահելով իր չորս տարեկան դստերը, որն արդեն ձեռքը երկարել էր դեպի հրաշք տիկնիկները:

— Ես Իշխան Պլոմբիրն եմ,—ասաց ոսկյա սկաֆանդրով մարդուկը:— Իհարկե, մեր լեզվով ինձ այլ կերպ են կոչում: Սակայն ձեզ համար ես կլինեմ Իշխան Պլոմբիր: Եվ այսուհետև ինձ դիմելիս էլ ասացեք՝ ձերդ մեծություն:

— Անշուշտ, ձե՛րդ մեծություն, անշուշտ: Դուք չէի՞ք կարող ասել, ձե՛րդ մեծություն, թե որքան ժամանակ եք այստեղ մնալու:

— Ամեն բան կախված է եղանակից,—պատասխանեց Իշխան Պլոմբիրը:—Հրթիռանավերը կարգավորելու համար մեզ անհրաժեշտ է թարմ ձյուն: Հենց որ ձյուն գա, մենք կշարունակենք մեր թռիչքը: Մենք թռչում էինք Հյուսիսային բևեռ, բայց ճանապարհին, ծովի վրայով թռչելիս, ընկանք օդի տաք շերտի մեջ:

— Ուրեմն դուք մտադիր եք մեր մոլորակի վրա՞ հաստատվել:

— Այո՛, հյուսիսային բևեռում: Այն, միևնույն է, բնակեցված չէ, մեր մոլորակին էլ սպառնում է շիկացած գիսաստղի հետ բախվելը, որից կհալվի մեր մոլորակի ողջ սառցե մակերեսը: Մենք հարկադրված էինք մի նոր մոլորակ որոնել: Եվ կանգ առանք ձեր մոլորակի հյուսիսային բևեռի վրա: Ես



# ՃԱՆԱՊԱՐՀ

ՕՔՍԱՆԱ ՍԵՆԱՏՈՎԻՉ

(Ուկրաինացի բանաստեղծ)

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Ճանապարհը գնում, գնում,
Սար ու ձորով ոլոր-մոլոր,
Մեկ էլ ոտքը սայթաքում ու
Գլորվում է գետակը խոր:
— Վա՜յ,— կանչում են սարն ու քարը,—
Խեղդվո՜ւմ է ճանապարհը:—
Ծիտիկները կտուցներով
Ծղոտներ են բերում արագ,
Արագիլը կավ է հունցում
Ոտներով իր երկար-բարակ:
— Վա՜յ, օգնեցե՜ք, փրկեցե՜ք շուտ,—
Ճչում են վիլ լոր ու արտույտ:
Բազուկները տարածելով,
Օգնության է հասնում սոճին,
Ծառ ու թփեր կտրատելով
Առաջ սուրում մի սուր կացին:
— Վա՜յ, օգնությա՜ն հասեք նրան,—
Զրնգում են ուրագ ու մուրճ...
Ու ելնում է ջրից ճամփան,
Գետի վրա դառնում կամուրջ:

Փոխադր. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ

գլխավորում եմ առաջապահ ջոկատը: Հենց որ տեղ հասնենք, անհապաղ կհաղորդեմ մեր մոլորակի բնակիչներին, և նրանք ևս կճանապարհվեն:

— Թույլ տվեք իմանալ, որքա՞ն եք դուք բոլորդ:

—Գրեթե մեկ և կես միլիարդ: Բևեռը մեզ լիովին կբավարարի: Մենք մտադիր չէինք երկրացիներից մեկնումեկին հայտնել մեր ծրագրերի մասին, բայց այդպես ստացվեց: Իսկ այժմ խնդրում եմ, փակեք սառնարանի դռնակը: Տաք օդից գլուխս սկսեց ցավել:

Սինյոր Մոլտենին չառարկեց: Նա զգուշությամբ փակեց դուռը և նետվեց դեպի պատուհանը: Ինչ՞ւ: Որպեսզի նայի երկնքին: Երկինքը պայծառ էր, ամպի և ոչ մի նշույլ: Ինչպես սովորաբար լինում է փետրվարին: Սինյոր Մոլտենին ուրախությամբ շփեց ձեռքերը:

— Զավթիչներ են մտել խոհանոց, իսկ դու ուրախանում ես,— կշտամբեց նրան սինյորա Մոլտենին:

— Դու ոչի՞նչ չես հասկանում,— բացականչեց սինյոր Մոլտենին:— Գիտե՞ս, թե դա ի՞նչ երջանկություն է մեզ համար:

Բայց սինյորա Մոլտենին այդպես էլ չիմացավ, թե ինչումն է այդ երջանկությունը, որովհետև նույն վայրկյանին հնչեց դռան զանգը: «Կրկնակի բևեռ» ֆիրմայի գործակալն էր:

— Բարի օր, սինյո՛ր Մոլտենի, ես եկել եմ սառնարանը տանելու: Վճարե՛ք սահմանված վարձը կամ ընդմիշտ հրաժեշտ տվեք «Կրկնակի բևեռին»:

— Ցավոք, հիմա ես ոչ մի լիրա չունեմ:

— Այդ դեպքում...

— Այո՛, այս դեպքում դուք ստիպված կլինեք և այլն, և այլն... Միայն թե չգիտեմ, նորին մեծությունը թույլ կտա՞:

— Այդ ի՞նչ նորին մեծություն է: Ի՞նչ հիմար կատակներ են, սինյո՛ր Մոլտենի:

— Խնդրում եմ, հարգելի՛ սինյոր, անցեք խոհանո՛ց: Եկեք հանգիստ խոսենք:

— Խնդրեմ: Սկզբում...

— Սկիզբը արդեն կա, բայց թե ինչպիսին կլինի վերջը, այդ է ամբողջ խնդիրը:

Սինյոր Մոլտենին բաց արեց սառնարանը:

— Խնդրում եմ ներեք, ձե՛րդ մեծություն: Բայց այս սինյորը...

— Ես ամեն ինչ լսել եմ: Մենք լսողության հատուկ սարքավորումներ ունենք, սիրելի՛ Մոլտենի: Այսպես թե այնպես, այս սառնարանը պատկանում է ինձ, և ոչ ոք իրավունք չունի ձեռք տալ նրան:

— Բարեհաճում եք կատակե՞լ, սինյո՛ր Մոլտենի,— աղաղակեց գործակալը:— Այս ի՞նչ ճիվաղներ



են: Լսե՛ք, հարգելի՛ս, ես չգիտեմ, թե դուք վարձը չվճարելու համար ի՛նչ խորամանկության եք դիմել: Բայց իմացե՛ք. խաբել մեր ֆիրմային ձեզ չի հաջողվի: Ձեզանից խորամանկներն էլ են եղել, որոնց ոչինչ չի հաջողվել: «Կրկնակի բևեռ» ֆիրման լիակատար իրավունք ունի սառնարանը տանելու և ձեր այս տասնյակ ճիվաղները խանգարել չեն կարող:

«Ճիվաղներ» բառի վրա մեկեն բոլոր օտարմոլորակցիները վրդովվեցին: Սակայն նորին մեծության կտրուկ ձայնը խլացրեց առարկությունները.

— Պարո՛ն գործակալ, որպես պատիժ մենք ձեզ ուղարկում ենք սեղանի տակ: Ձեռքով ամուր փակեք ձեր բերանը և նստեք ու ծպտուն չհանեք, մինչև իմ նոր կարգադրությունը:

Եվ, աշխարհահռչակ «Կրկնակի բևեռ» ֆիրմայի գործակալը զույգ ձեռքով իր բերանը փակած մտավ սեղանի տակ: Մոլտենին և նրա ամբողջ ընտանիքը աղմուկով ծափահարեցին:

— Ձե՛րդ մեծություն, այդ ինչպե՞ս կարողացաք:

— Շատ պարզ. մենք ուսումնասիրել ենք ձեր ուղեղը և գիտենք ինչպես հնազանդեցնել ձեզ: Ծածկե՛ք դուռը, խնդրեմ, ցտեսությո՛ւն:

— Ցտեսությո՛ւն, ձե՛րդ մեծություն: Միշտ պատրաստ եմ ձեզ ծառայելու:

Սինյորա Մոլտենին այլևս բացատրության կարիք չուներ: Նա նույնպես, ուրախությունից ձեռքերը շփելով, վազեց պատուհանի մոտ:

Ամբողջ փետրվար ամիսը հրաշալի եղանակներ եղան, Միլանի վրա գարնանային պայծառությամբ շողում էր արևը:

Այդ ընթացքում թերթերը շարունակ նորանոր լուրեր էին հաղորդում մարսեցիների ներխուժման մասին: Ժողովուրդը լգահորեն կլանում էր թղթա-




կիցների այն հոդվածները, որտեղ պատմվում էր «սառցամարդուկների» հետ կայացած զրույցների մասին: Սակայն, ինչպես հայտնի է, մարդկանց ավելի գրավում էին մանր-մունր հետաքրքրաշարժ մանրամասները: Նրանք ուզում էին իմանալ, թե ինչ է ուտում Իշխան Պլոմբիրը ճաշի ժամանակ: Պարզվեց, որ նա ուտում է շաքարած սառցե կտորներ: Խնամքով իրարից արտագրում էին պաղպաղակ պատրաստելու գաղտնիքները, որոնք մարսեցիները սիրահոժար պատմել էին սինյորա Սանդրելիին: Եվ գրեթե ամբողջ Միլանը ցավակցում էր սինյոր Մոլտենիին, որի դեմ «Կրկնակի բևեռ» ֆիրման դատական գործ էր հարուցել: Առավոտից մինչ ուշ երեկո մարդիկ հավաքվում էին Տադինի փողոցի № 18 տան առաջ, վերջին նորությունները իմանալու:

— Իշխան Պլոմբիրը ամուսնության քառասուն առաջարկություն ստացավ:

— Ասում են, որ բարապանուհու աղջիկն էլ է սիրահարվել Իշխանին:

— Երրորդ հարկի «սառցամարդուկները» ագահաբար կարագ են կերել:

Երբ Իշխան Պլոմբիրը համաձայնվեց իրեն ուղղված հարցերին պատասխանել հեռուստացույցի էկրանից, նրան կարողացան տեսնել ամբողջ աշխարհի հեռուստադիտողները: Եվ աշխարհի բոլոր կողմերից մարսեցիներին հղվեցին հազարավոր նամակներ:

Բայց հանկարծ, երկինքը ծածկվեց թուխ ամպերով, իսկ օդերևութաբանները հաղորդեցին, որ րոպե առ րոպե կարող է ձյուն գալ: «Սառցամարդուկները» սալաթի տերևների տակից հանեցին իրենց հրթիռանավերը և պատրաստվեցին թռիչքի:

Սինյոր Մոլտենին դարձյալ անհանգստացավ: Դատարանում գործերը նրան ի վնաս ընթացք առան: Կրկին հառնում էր սարսափելի ու անզիջող հարցը. պարտքը մարել կամ բաժանվել սառնարանից:

Մի առավոտ, պատուհանը բացելու, Մոլտենին տեսավ, որ փողոցներն ու տանիքները ծածկվել են ձյունով:

«Ամեն բան կորած է,— մտածեց Մոլտենին:— Մնում է հայտնել նորին մեծությանը»:

Բայց Իշխան Պլոմբիրն արդեն գիտեր:

— Տեսել եմ, տեսել,—ասաց նա:— Մենք փակ սառնարանից տեսնելու սարքավորում ունենք: Պատըշգամբում արդեն թարմ ձյուն ենք հավաքել, և հրթիռանավերը պատրաստ են թռիչքի:

— Եվ այսպես, մնաք բարո՜վ,— տխուր շշնջաց պարոն Մոլտենին: Իսկ մտքում մտածեց. «Մնաս բարո՜վ, իմ սառնարա՜ն»:

— Ո՜չ, ո՜չ,— ասես կարդալով նրա մտքերը, ժպտալով ասաց Իշխան Պլոմբիրը,— դուք չեք բաժանվի ձեր սիրելի սառնարանից: Ապա կարդացեք այս:

«Այս»-ը մի թերթ թուղթ էր, որի վրա Իշխան Պլոմբիրը մեծ-մեծ տառերով, մեծագույն դժվարությամբ գրել էր. «Մեծ հաջողություն եմ համարում, որ ինձ սիրով հյուրընկալեց «Կրկնակի բևեռ» սառնարանը: Անկեղծ և խոր համոզմունքով հայտարարում եմ, որ այդ սառնարանը ողջ արեգակնային համակարգության ամենալավ սառնարանն է: Իշխան Պլոմբիր»:

— Կտեսնեք,— ասաց նորին մեծությունը,— որ այժմ «Կրկնակի բևեռ» ֆիրման ձեզ կզիջի ոչ միայն նախկին, այլև ապագա պարտքերը: Սառնարանը համարեք ձերը, նրա համար ոչ մի լիրա այլևս չեք վճարի:

Այդպես էլ եղավ: Եվ այժմ, երբ սինյոր Մոլտենին ուզում է մխիթարել ընկերներից մեկնումեկին, որը բավական մեծ պարտք ունի որևէ ֆիրմայի, ասում է՝ «Հույսդ դիր մարսեցիների՜, ոչ թե աստծու վրա»:

*Ռուս. թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ*

# ԹՌՉՈՂ ԿԱՐԱՍԸ

ԿՈՐՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆ

Մեր համագյուղացի Ջեթո բիձուն մի անգամ խնդրեցինք.

— Ջեթո՛ բիձա, մի բա՛ն պատմիր՝ քիչ ուրախանանք։

Նազ ու տուզ անել չգիտեր։

Բեղերը հարդարեց, մի քար հարմարեցրեց տա՛կը, առանց շտապելու հանեց գրպանից թութունի տոպրակը, քառասնամյա չիբուխը լցրեց, պարունակությունը բութ մատով սեղմեց։ Մյուս գրպանից հանեց կայծքարը, հրահանն ու աբեթը, սկսեց միապաղաղ հարվածել ու փչել՝ փու, հա՜ փուհ։

— Էս անտերն էլի գժվեց, չի ուզում կպչի,— դժգոհում է ու նորից ինքն իրեն սիրտ տալիս,— ոչի՜նչ, մարդուն համբերություն է տրված, համբերենք։ Կվառվի։ Ա՛յ, տեսնո՞ւմ եք, վառվեց, տեսեք, ի՜նչ կրակ է, որ ուզենանք վրան մի վարազ կխորովենք։

Ջեթո բիձան դառը ծուխը մի երկու անգամ խորը ծծեց, հազաց ու սկսեց.

— Այսօրվա պես հիշում եմ, մայիսի 13-ին էր, օրը՝ ուրբաթ։ Պարզ ու խաղաղ օր էր։ Ես մի մատ երեխա էի ու մեր բակի երեխեքի հետ պահմտոցի էի խաղում։ Շատ էինք խաղացել, թե քիչ, լավ չեմ հիշում։ Հերթը ինձ հասավ, ես աչքերս փակեցի. մյուսները այս ու այն կողմ գնացին՝ պահվելու։

Ես աչքերս բացեցի ու պահվածներին էի փնտրում, մի քանիսին դեսից-դենից գտա... Մեկ էլ հանկարծ որտեղից-որտեղ մի կատաղած քամի բարձրացավ, այն, որ սատանայի քամի են ասում։ Սկսեց բակի մեջ ոռնալով պտտվել։ Մեր բակում մի կարաս կար, ուղիղ քառասուն դույլ ջուր էր տանում։ Մեկ էլ ինչ տեսնենք, քամին այդ հսկա կարասն օդ է բարձրացրել։ Խաղը թողած, կարասի հետևից ենք նայում, ծիծաղից շունչներս կտրվում է։ Մեծերը տնից դուրս են եկել, նույնպես ծիծաղում են։

Ծիծաղի ու իրարանցման մեջ էինք, մեկ էլ Արշալույսը պահված տեղից դուրս թռավ, գոռաց.

— Այ ձեր տո՛ւնը չքանդվի, ի՜նչ եք հռհռում, խեղճ Սարգիսը կորավ, կարասն այսօր դատարկ էր, իմ աչքով տեսա, նա կարասի մեջ մտավ։

Այս խոսքի վրա տներում մնացածներն էլ դուրս թափվեցին։

Խեղճ Սարգսի մայրը՝ Հայկանուշ մորաքույրը «վա՜յ բալա ջան» գոռալով՝ գլխին ու ծնկներին էր տալիս։ Հարևան կանայք նրան հանգստացնելու համար մխիթարիչ խոսքեր էին ասում. «Ի՞նչ ես քեզ կորցրել, Սարգիսն ուրիշ բակ գնացած կլինի։ Կարասը ջրով լիքն էր, ինչպե՞ս պետք է մեջը մտներ»։

Այս կողմ, այն կողմ ընկանք. «Սարգիս, ա՛յ Սարգիս»։ Սարգիսը չկա ու չկա։ Իսկ անտեր քամին հսկա կարասն առած քշում է ու քշում։ Մեկ էլ ինչ տեսնենք, կարասից մի գլխարկ դուրս թռավ՝ մեր Սարգսի գլխարկը։ Էլ կասկած չմնաց, Սարգիսը կորավ։ Մայրն աղաչանք, պաղատանք է անում, որ օգնեն, փրկեն տղային։ Ո՞վ, ինչպե՞ս օգնի։

Խելագար քամին կարասը ավելի ու ավելի բարձրացնելով, տանում է ու տանում։ Հասցրեց ամպերին, վերջը մի փոքրիկ սև կետ մնաց։

Մեկ էլ մի անձրև սկսվեց, մի այնպիսի անձրև, իսկական ջրհեղեղ։ Ջուրը վերևից դույլով էր թափվում։ Լավ էր երկար չտևեց, թե չէ գյուղը տեղահան կաներ։

Ջեթո բիձան մի պահ լռեց, խորհրդավոր հայացքով սկսեց շուրջը նայել, ճաղատ գլուխը շփեց։ Չիբուխը բերանն առավ, մի լավ ու խորը ծծեց, կարծես նրանից պիտի ուժ ստանար։ Իսկ մենք շունչներս պահած սպասում էինք, թե երբ պիտի պատմությունը շարունակվի, ինչ է լինելու Սարգսի վերջը։

Վերջապես Ջեթո բիձան մի անգամ էլ չիբուխը խոր ծծեց, ծխի ամպերը դուրս մղելուց հետո շարունակեց.

— Շուտով երկնքում երևացող սև կետն էլ պիտի անհետանար, բայց ահա անձրևը կտրվեց, սև կետը գնալով սկսեց մեծանալ։ Ստացվեց, որ քամին փոշմանել, կարասը ետ է բերում։

Քամին կարասը բերեց, բերեց հասցրեց բակի վերևը, մի քանի անգամ պտույտ-պտույտ արեց ու տարավ նույն տեղը, որտեղից վերցրել էր։

Հիմա ոչ ոք սիրտ չի անում թե մոտենա կարասին, վախենում են։ Սարգսի մայրն է միայն ուզում մոտենալ, բայց ծնկներում ուժ չի մնացել, նստել ու տեղից բարձրանալ չի կարողանում։

Մենք քարացել մնացել ենք ամեն մեկս մեր կանգնած տեղը... Մեկ էլ կարասից դուրս եկավ մի գլուխ՝ Սարգսի գլուխը։ Վրա հասանք, հանեցինք նրան կարասից։ Նա ողջ-առողջ էր, միայն վախից լեզուն էր բռնվել։

— Համա՜ թե փչեցիր, Ջեթո բիձա,— սթափվելով ասացինք մենք,— լա՜վ փչեցիր...

— Փչոցի լավն ու վատն էլ կա՞... հա՞... դե որ լավն էր, էլ ի՜նչ եք անուն դնում... «փչեցիր»... փոխանակ շնորհակալ լինեք։

— Շնորհակա՛լ ենք, Ջեթո՛ բիձա, շնորհակա՛լ ենք,— աղաղակեցինք մենք։— Մի բան էլ պատմի։

— Շատ կլինի... այսօրվա համար հերիք է...

# ՄԱՐԴՈՒ ԱՐՏԱՔԻՆԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԷՈՒԹՅՈՒՆԸ

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

## 3. ԴԱՐԱՇՐՋԱՆՆԵՐ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐ ԵՎ ՄՈԴԱՆԵՐ


մեն մի երկրում, տարբեր դարաշրջաններ ծնում են մարդկանց, որոնք դառնում են «հասարակության ընդօրինակության էտալոններ», այլ կերպ ասած՝ մոդայի օրենսդիրներ:

Մի ժամանակ Ռուսաստանում մոդայի այդպիսի մի օրենսդիր էր հայտնի իշխան Գոլիցինը: Իշխանը ոչինչ չէր խնայում իր արտաքինի համար: Հավվագույն կարմիր սամույրից կարված նրա բոյարական գլխարկը արժեր մի ամբողջ կարողություն՝ 10.000 չերվոնեց, այնքան, որքան արժեր երեք հազար ճորտը: Նա օգտագործում էր կանացի կոսմետիկա, կարմիր ու սպիտակ ներկերով շպարվում, գանգրացնում էր բեղերը: Բազմաթիվ պալատականներ ստրկամտորեն ընդօրինակում էին նրա յուրաքանչյուր շարժուձևը, յուրաքանչյուր քայլը, ջանալով ամեն ինչով նմանվել շքեղափայլ իշխանին:

Զգեստի պատմության մեջ այդպիսի մարդիկ շատ են եղել: Օրինակ, խոսելով անցյալ դարի Անգլիայի պատմության մասին, չի կարելի չհիշել աշխարհիկ հռչակավոր էսթետ, պճնամոլ և, ինչպես այժմ կասեինք՝ պորտաբույծ Բրեմմելի անունը: Ի տար-



բերություն աշխարհիկ այլնայլ պորտաբույծների, Բրեմմելը ոչ մի րոպե անգործ չէր մնում, գլխովին կլանված էր իր կյանքի միակ նպատակը կազմող մի ըմբռնումով՝ սեփական արտաքինով: Բավական է մտաբերել

Սկիզբը՝ «Պիոներ» № № 1, 2։

նրա միայն ձեռնոցները: Բրեմմելի հռչակավոր ձեռնոցներն արվեստի յուրօրինակ ստեղծագործություն էին: Այդ ձեռնոցների վրա աշխատում էին չորս նկարիչ: «Մոդայի արքայի» դատողություններն անվերապահ էին և անառարկելի: Մի անգամ նա նույնիսկ ստիպել է լաց լինել թագաժառանգին՝ Ուելսի արքայազնին: Մեծ Բրիտանիայի վաղվա արքան լաց էր լինում, որովհետև շքեղաշուք Բրեմմելը չէր հավանել նրա նոր զգեստը:

Զգեստների շատ ձևեր, որ այնքան սովորական են թվում մեզ, որոշ դեպքերում ունեն ոչ այնքան սովորական պատմություն: Այսպես, օրինակ, գալիֆե շալվարն իր ծագումով պարտական է Փարիզի կոմունայի դահիճ, Ֆրանսիայի գեներալ Գալիֆեին: «Տոլստովկան» այդպես է կոչվում այն պատճառով, որ նման վերնաշապիկներ հագնում էր Լև Տոլստոյը:

1767 թվականին Փարիզում էր գտնվում ամերիկյան հայտնի քաղաքական գործիչ ու գիտնական Վենիամին Ֆրանկլինը: Մարդկանց ուշադրությունը չըգրավելու համար, նա իր գավառական սերթուկը փոխարինում է նորաձև կապայով և նույնիսկ սանրվում այնպես, ինչպես այն ժամանակ ընդունված էր Փարիզում:

Եվ այսպես, առաջին անգամ հայտնվելով Ֆրանսիայում իբրև մասնավոր անձ, Ֆրանկլինը անտրտունջ ենթարկվում է փարիզյան մոդային: Իր երկրորդ այցելությանը, ընդհակառակը, նա Փարիզը «ենթարկեց» իրեն: Եվ ահա թե ինչպես:

1776 թվականին Ֆրանկլինը Փարիզ եկավ արդեն իբրև Միացյալ Նահանգների դեսպան: Նրա հայրենիքը, որ նոր էր պենքը ձեռքին անկախություն նվաճել, այն տարիներին շատ-շատերի աչքում ազատատենչ ոգու մարմնա-



ցումն էր: Զարմանալի չէ, որ ձգտելով ամեն ինչով ընդօրինակել ազատության համար մարտընչող ամերիկացիներին, շատերը ջանում էին նախ և առաջ արտաքնապես նմանվել նրանց: Դա հեշտ էր մանավանդ այն պատճառով, որ նրանց աչքի առաջ էր կենդանի նմուշը՝ Վենիամին Ֆրանկլինը: Հիմա արդեն, երբ նա ներկայացնում էր իր հայրենիքը, պատվի հարց էր պահպանել նույն արտաքին տեսքը, ինչ ուներ նախքան Ամերիկայից Փարիզ ժամանելը: Սկզբում նրա դարչնագույն համեստ կապան և հարթ անդրավարտիքը Փարիզում շատերին անպատշաճ էին թվում: Հետո հանկարծ հայտնվեցին մի քանի ընդօրինակողներ: Իսկ մի քանի օր անց «ա-լյա Ֆրանկլին» սանրվածքի սիրահարները վարսավիրների մոտ իրար հերթ չէին տալիս: Կեղծամները, որ դեռ երեկ մոդայի ու էլեգանտ սանրվածքի խորհրդանիշ էին, դեն նետվեցին:

Նախահեղափոխական Սորմովոյում, ուր թվում էր, թե մարդիկ մեծ սպասելիքներ չունեն կյանքից, բացի մռայլ, անուրախ օրե-

րի շարանից, ժամանակը ստեղծեց իր մոդան: Այս անգամ դրա օրենսդիրը Գորկին էր: «Մենք աշխատում էինք հագնվել այնպես, ինչպես տեսել էինք նրա



լուսանկարում,— հիշում է սոր- մովցի բանվորներից մեկը:—Երկար մազեր էինք պահում: Ով նրա լայնեզր գլխարկից չուներ, գոնե նրա հաստ ձեռնափայտից էր ձեռք բերում»:

Արևմուտքում մոդա ստեղծելու փայլուն պատկեր է հետևյալ օրինակը: Մի քանի տարի առաջ Միացյալ Նահանգներում կանացի գլխարկներ արտադրող ընկերությունները նկատում են, որ դրանց վաճառքը ընկել է 7 տոկոսով: Սկսում են շտապ որոնել պատճառը: Պարզվում է, որ ամերիկացի կանանց միայն 22 տոկոսն է գլխարկ դնում, 32 տոկոսը դնում է հազվադեպ, իսկ 40 տոկոսը վերջին երկու տարում չի գնել և ոչ մի գլխարկ:

Ընկերությունները տագնապ հայտարարեցին: Հարկավոր էր կանանց համոզել, որ պետք է գլխարկ դնել: Այսինքն, հարկավոր էր մոդա ստեղծել: Գործի դրվեց առևտրական գործի հզոր մեքենան՝ ռեկլամը: Եվ շատ չանցած, կոկակոլա ըմպող գեղեցկուհիներն արդեն երևում էին միայն հիասքանչ գլխարկներով: Հեռուստացուցային ընկերությունների հետ համաձայնություն է կնքվում, որ դիտողների առաջ այլևս «գլխաբաց» դերասաններ հանդես չգան: Գլխարկի մագնատների պատվերով կոմպոզիտորներն ու բանաստեղծները երկու երգ են հորինում, որոնք շաբաթներ շարունակ տառացիորեն ողողում են եթերը: Այդ երգերի տեքստը ծանրաբեռնված չէր փիլիսոփայական խոր բովանդակությամբ: Դրանցից մեկը կոչվում էր «Գլխարկն ինձ սազում է» և հինգ քառյակով բուռն հրճվանք էր արտահայտում այդ առթիվ: Մյուս երգը հայտնում էր, թե այդ գլխարկն է առիթ դարձել սիրային պատմության: Այսքանը բավական էր, որպեսզի համոզեր կանանց գլխարկներ գնել:

Այսպիսով կապիտալի աշխարհում մոդաները կարող են ծնունդ առնել ոչ թե գեղագիտական պահանջների ազդեցությամբ, այլ իբրև զուտ առուծախի երևույթ:

Հասկանալի է, որ զգեստների մոդելները և հենց մոդաները ապրանք են: Բայց քչերը կիմանան, թե ինչպիսի կրքով են մրցակից ֆիրմաները հետամուտ լինում նոր մոդաների: Գործի է դրվում ոչ միայն կաշառքը, այլև լրտեսությունը: Օրինակ, ֆրանսիական մամուլի վկայությամբ, ամերիկյան մոդելի տան տնօրենները մշտապես լրտեսներ են ուղարկում իրենց փարիզյան արհեստակիցների մոտ: Կոճակների մեջ հարմարեցրած ամենափոքր կինոապարատով զինված, այդ գործակալները իրենց տերերին վաղօրոք հայտնում են սեզոնի բոլոր մոդելները: Արդյունքը լինում է այն, որ երբ փարիզյան մոդելները հայտնվում են շուկայում՝ հանդիպում են ամերիկյան արտադրանքի իրենց պատճեններին: Այդ լրտեսությունը ֆրանսիական մոդելագործներին ամեն տարի հարյուրավոր միլիոն ֆրանկ վնաս է պատճառում, համապատասխանաբար եկամուտներ բերելով մրցորդներին՝ պատրաստի հագուստեղենի ամերիկյան մոդելի տներին և ֆիրմաներին:

Եթե մի կողմ դնենք մոդաների ստեղծման այս տգեղ ձևերը, պետք է խոստովանել, որ մոդան ամեն մարդու էլ կարող է կանգնեցնել բավական բարդ երկընտրանքի առաջ: Օրինակ, կարող է այսպիսի հարց ծագել. սա մոդայիկ է, բայց ինձ չի սազում, իսկ սա մոդայի հետ առնչություն չունի, բայց ինձ սազում է: Վատթարագույն դեպքում, որ գերակըշռող մասն է կազմում, հաղթանակ է տանում մոդան: Եվ չի կարելի ավելի պատկերավոր օրինակ բերել ցույց տալու համար, թե ինչպես է մոդան հաղթում առողջ բանականությանը, քան հետևյալ դեպքը: Երբ Ֆրանսիայի թագուհի Մարի Անտուանետը, թագաժառանգի լույս աշխարհ գալուն սպասելիս, սկսեց լայն զգեստներ հագնել իր կազմվածքը քողարկելու համար, ամբողջ Ֆրանսիան լցվեց «հղի» կանանցով: «Հղի» երևալը մոդա էր: Ծուռափութ քանդվում և վերակարվում էին շրջազգեստները: Այն կինը, որ համդգնում էր չհետևել դրան, մյուսների աչքում դառնում էր անսահմանորեն հնամոլ և նույնիսկ գռեհիկ ճաշակի տեր: Ճիշտ նույն ձևով անցյալ դարի վերջե-



րին Անգլիայում չկար մոդային քիչ թե շատ հետևող մի կին, որը... մի թեթև չկաղար: Ինչո՞ւ: Որովհետև դրանով էր աչքի ընկնում այդ ժամանակների մոդայի օրենսդիրը՝ Ուելսի արքայադուստրը, որը տառապում էր հոդացավով:

Ի՞նչ է վկայում այս ամենը, վաղուց հայտնի բան. ոչինչ այնպես անցողիկ չէ, ինչպես մոդան...

Իհարկե, գեղեցիկ հագնվել, նշանակում է հագնվել մոդայի

# ԼԵՎՈՆ ԶԱՎԵՆ ՍՅՈՒՐՄԵԼՅԱՆ



Լևոն Զավեն Սյուրմելյանը ծնվել է Տրապիզոնում 1906 թվականին:

1915 թվականին եղբայրներով ու քույրերով որբանում են և բռնում տարագրության ուղին: Հետագա տարիներին Սյուրմելյանը տեղափոխվում է որբանոցից-որբանոց: Վերջապես, ուրիշ բազում որբերի հետ նա ապաստան է գտնում Պոլսի Եսայան վարժարանի որբանոցում և սկսում սովորել նույն քաղաքի Կենտրոնական միջնակարգ վարժարանում, որտեղ պաշտոնավարում էր անվանի բանաստեղծ Վահան Թեքեյանը:

Որբանոցում Սյուրմելյանը գրում էր բանաստեղծություններ և նրա հանդիպումը Թեքեյանի հետ լինում է շատ բախտորոշ: Թեքեյանը տպագրում էր նրա բանաստեղծությունները իր խմբագրած «Ժողովուրդի ձայն» օրաթերթում, իսկ 1924-ին 18-ամյա Սյուրմելյանի գործերը լույս է ընծայում առանձին ժողովածուով, որը կոչվում է «Լույս զվարթ»:

Այս հատորը արժանացավ թե՛ ընթերցողների և թե՛ քննադատների ջերմ ընդունելությանը: Բայց այնուհետև Սյուրմելյանն այլևս բանաստեղծություններ չգրեց: Նա տարված էր այլ երազանքներով: Ուզում էր գյուղատնտես դառնալ և վերադառնալ Հայաստան: Այդ մասին նա գրում է. «Ամենեն կա-

---

համաձայն: Պատկերացրեք, թե ինչ տարօրինակ կթվային տղամարդիկ լայն անդրավարտիքներով, ինչպես հագնում էին տասնյակ տարի առաջ, երբ գեղեցիկ էր համարվում հագնել այնքան լայն, որ շալվարի փողքերը ծածկեն կոշիկները:

Սակայն, եթե գեղեցիկ հագնըվելու հարցը սպառվեր մոդայի համաձայն հագնելով, ամեն ինչ շատ պարզ ու գեղեցիկ կլիներ:

Մարդու արտաքինին վերաբերող գեղագիտական պահանջներից մեկն այն է, որ հագուստը չպետք է դարձնել ուշադրություն գրավելու, առանձնանալու միջոց: Չգեստի ճչացող, աններդաշնակ գույները երբեք լավ ճաշակի նըշան չեն եղել: Ընդհակառակը, դա վատ ճաշակի, գռեհկության ստույգ նշան է: Սովորաբար այդպես ջանում է ուշադրություն գըրավել այն մարդը, ով չի կարող դրան հասնել ուրիշ միջոցներով: Հագուստին վերաբերող մյուս կարևոր պահանջը՝ խնամքով հագնվելն է: Մարդու արտաքինը, նրա զգեստը խոսում են ոչ միայն իր մասին, այլև շրջապատի հանդեպ ունեցած իր վերաբերմունքի մասին: Այդ բանը երբեք չէր մոռանում Նապոլեոնը: Պիոս 7-րդ պապի հետ ունեցած հանդիսավոր հանդիպմանը Նապոլեոնը դիտմամբ ներկայանում է անփույթ, որսորդական հագուստով: Իսկ երբ պարտության մատնված Պրուսիայի թագուհի Լուիզան իր ամենաշքեղ արդուզարդով դուրս է գալիս դիմավորելու Նապոլեոնին, պալատի մարմարե սանդուղքի աստիճաններով նրան ընդառաջ է գալիս մոխրագույն, փոշոտ եգերյան համազգեստով, մորակը ձեռքին մի մարդ:

Մի ժամանակ Լայպցիգի համալսարանում սովորում էր Գյոթե անունով մի պատանի: Հարուստ ուսանողները ծիծաղում էին նրա գավառական հագուստի վրա: Նվաստացմամբ լի այդ տարիների մասին չէ՞ր, արդյոք, հետագայում հիշում Վայմարում ապրող մեծ բանաստեղծ Գյոթեն, երբ այցի եկած պալատական անձանց ընդունում էր ընդգծված անփութությամբ՝ ֆլանելե խալաթով և մաշիկներով:

Սակայն, մի կողմ թողնելով միտումնավոր անփութության դեպքերը, նկատենք, որ անփույթ հագնվելը սովորաբար բավական ճիշտ արտացոլում է մարդու բընավորությունը: Մարդկանց հետ ունեցած հարաբերությունների մեջ անպարտաճանաչ ու անփույթ մարդիկ, որոնք սովոր չեն գործը մինչև վերջ հասցնել, իրենց հագուստի վրա միշտ կրում են այդ փնթիության կնիքը: Հիշո՞ւմ եք, թե ինչ է ասում Չեխովը. «Մարդու ամեն ինչը պետք է գեղեցիկ լինի՝ և՛ դեմքը, և՛ հագուստը, և՛ հոգին, և՛ մտքերը»:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*

րևոր բանը ինձի համար՝ Հայաստանի վերաշինությունն էր և բարօրությունն ու հառաջադիմությունը իմ ժողովուրդիս: Կկարծեի, թե բանաստեղծությունը տեսակ մը թուլություն և տկարացում կնշանակեր մեզի համար»:

Եվ երիտասարդ Սյուրմելյանը մեկնում է ԱՄՆ և հետևում Կանզասի պետական կոլեջի գյուղատընտեսական ճյուղին: Կոլեջն ավարտելու տարին նա նամակ է ուղարկում Սովետական Հայաստանի հողագործության կոմիսարին, որ ուզում է գալ և աշխատել Հայաստանում: Սակայն ծանր հիվանդանում է և երկար ժամանակ գամվում անկողնին:

Այդպես էլ Սյուրմելյանին չվիճակվեց հաստատվել հայրենիքում: Եվ «Լույս զվարթ»-ից հետո նա այլևս հայերեն չգրեց: Բայց հեռավոր Ամերիկայում էլ նա ամբողջ եռանդով սկսեց ծառայել հայ մշակույթին:

Նա անգլերենով մշակեց ու լույս ընծայեց հայկական էպոսը՝ «Սասնա ծռերը», որը մեծ ընդունելություն գտավ և վերահրատարակվեց: Օտարազգի բազմաթիվ գրաքննադատներ բարձր գնահատեցին հայկական սքանչելի էպոսը: Անուհետև Սյուրմելյանը վերամշակեց և մեծ տպաքանակով հրատարակեց հայկական 40 ժողովրդական հեքիաթներ՝ «Անմահական խնձորներ» վերնագրի տակ: Գրականագետները հայկական հեքիաթները համեմատեցին Գրիմ եղբայրների հեքիաթների հետ:

Սյուրմելյանը ջերմորեն կապված է Սովետական Հայաստանի հետ: 1964 և 1970 թվականներին նա այցելել է հայրենիք և վերադարձին գրել իր հիանալի տպավորությունները վերածնված հայոց աշխարհի մասին:

Տպագրում ենք «Անմահության խնձորները» գրքի առաջաբանից մի հատված, ուր Սյուրմելյանը պատմում է Տրապիզոնում անցկացրած իր մանկության մասին:

*ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆ*






# ԱՆՑԱԾ ԳՆԱՑԱԾ ՕՐԵՐ

Հորս դեղատունը գտնվում էր Տրապիզոնի կենտրոնում, առևտրական գլխավոր փողոցի վրա: Նրա անունը՝ «Կենտրոնական դեղատուն» ոսկետառ գրված էր ֆրանսերեն, թուրքերեն, հայերեն և հունարեն լայն լուսամուտի ապակիների վրա: Դա բացառապես դեղատոմսերով դեղ պատրաստող մի դեղատուն էր: Այժմյան պատրաստի դեղերի առատությունը երևի շփոթեցներ, եթե չասենք կսարսափեցներ հորս: Դեղատան ներսի սենյակում հույն մի բժիշկ՝ Անդրեաս Մետաքսասը քննում էր հիվանդներին, որոնցից մի մասը գալիս էր հեռավոր գյուղերից՝ ջորիների և էշերի վրա:

Մենք ապրում էինք մի փոքրիկ փողոցում, որտեղ խանութներ չկային, միայն բնակելի տներ էին: Փողոցը մի ծայրից պատնեշված էր պատով, որպեսզի առևտրականները ազատ ելումուտ չանեն: Նրա սալահատակը այնքան մաքուր էր, որ ինչպես ասում են, կարող էիր անկողինդ փռել ու պառկել: Բայց փողոցը փակ չէր մանր փերեզակների առաջ: Առավոտ շուտ առաջինը գալիս էր հացագործը՝ ավանակի վրա նոր դուրս հանված թարմ հացով լիքը երկու զամբյուղ: Էշի վզից ու ճակտից կախված էին կապույտ ուլունքներ՝ նրան չար աչքից պաշտպանելու համար: Հացագործը մեզ հետ իր հաշիվը պահում էր մեր ճաշասենյակում գտնվող հաշվեփայտի վրա խազեր կտրելով: Նրանից հետո գալիս էին մեկ կամ երկու սիմիտչիներ. սրանք թուրք երիտասարդներ էին, որ վաճառում էին փոխբում շուշմայով պատած կլորակներ իրենց վզից կախված փայտյա ափսեների մեջ: Ապա գալիս էին պայտած կոշիկներով բանջարեղեն վաճառողները, որոնցից մեկի ուսին բանջարեղենի զամբյուղն էր, մյուսի ձեռքին շատ պարզունակ մի կշեռք, կշռաքարի փոխարեն տարբեր չափսի խճաքարերով: Մայրս, նախքան օրվա անհրաժեշտ պաշարը գնելը, սակարկում էր նրանց հետ և բանջարեղենի գինը իջեցնում մեկ կամ երկու պեննիով: Բյուզանդական որմնանկարներ հիշեցնող տարազներ հագած գյուղացի կանայք ամաչկոտ ձայներով բղավում էին «մածուն» և դասական ձևի կավե կճճերի ու կճուճների մեջ վաճառում կաթ և մածուն: Ձկնավաճառները բարձր, բամբ ձայնով գոռում էին ձըկների տարբեր անուններ՝ «բարբունյա», «մեզիտ», «խալիկան», «համսի», «անձրուկ»: Երբ ջրերը բարձրանում էին, այնքան առատ էին լինում անձրուկները և այնքան էժան, որ գյուղացիները այս ձկները օգտագործում էին որպես պարարտանյութ: Գիշերները մենք լսում էինք թռված-պայթեցրած եգիպտացորենի հատիկ վաճառողների կանչերը և մերթ ընդ մերթ՝ մեր գիշերապահի երկաթե ծայրով գավազանի հարվածները սալահատակի վրա, որոնցով մեզ տեղեկացնում էր, թե ամեն ինչ կարգին է:

Երեկոյան, երբ հայրս տուն էր գալիս, մենք բոլորս հավաքվում էինք ննջասենյակում, որը կա-



հավորված էր թուրքական ոճով և որի պատից կախված էին Իտալիայի մեկ քարտեզը և մի գրատախտակ: Հայրս սիրում էր պատի քարտեզները: Ռետինե կողերով սև կոշիկները հանելուց հետո, նա ծալապատիկ նստում էր վառարանի մոտի փոքրիկ ներքնակի վրա, տատիկի կողքին: Վիկտորիան՝ մեր սպասուհին, գյուղում ծնված գեղեցիկ մի աղջիկ, որը ինը տարեկանից մեր տանն էր, կատարում էր ավանդույթ դարձած ընտանեկան արարողությունը՝ արծաթե ափսեի վրա հորս մատուցում էր ախորժաբեր խմիչք: Հայրս շշից արծաթե ըմպանակի մեջ էր լցնում փոքր քանակությամբ մաստաքահյութով օղի, ավելացնում էր մի քիչ ջուր, որից օղին դառնում էր կաթնագույն սպիտակ և մեկ անգամից խմում էր, իսկ մենք ասում էինք. «Անուշ եղավ»: Ապա, նա անձեռոցիկով սրբում էր բերանը, աղմուկով արտաշնչում՝ արտահայտելով իր գոհունակությունը, իր զգացած հաճույքը, և ուտում էր մի քիչ ձկնկիթ կամ ռոքֆոր պանիր, կամ թթու և կամ մի քանի կաթիլ լիմոնի հյութ էր քամում հում ոստրեի վրա և կուլ տալիս:

— Ես լո՞րդ եմ, լո՞րդ եմ,— բացականչում էր նա,— ասել ուզելով անգլիացի լորդ, որը նրա համար հոմանիշ էր լավ ապրուստի և աշխարհիկ հարմարակեցության:— Ունեմ չորս զավակ, կին, սրանից ավելի ինձ ի՞նչ է պետք:

Մայրս հորիցս տասներեք տարով փոքր էր և ավելի բարձրահասակ էր: Նա ուներ չերքեզ իշխանուհու տիպ, փղոսկրյա սպիտակությամբ մորթ և երկար, բաց շագանակագույն մազեր, որոնք նա փաթաթում էր և հանգուցում ծոծրակին: Մինչդեռ հայրս թխադեմ էր: Ըստ մեզ հասած ընտանեկան զրույցի, մայրս ամուսնանալուց առաջ, տասնինը տարեկան հասակում, այնքան գեղեցիկ է եղել, որ Վիեննայո՞ւմ, թե՞ Ստամբուլում կատարած իր մի զանցանքի համար Տրապիզոն աքսորված ավստրիացի գեղադեմ մի իշխան սիրահարվել է մորս և ցանկացել ամուսնանալ հետը: Մայրս դուստրն էր մի հարուստ վաճառականի, որը նարդի էր խաղում Տրապիզոնի թուրք ընդհանուր կառավարիչի հետ և ղեկավարում հայկական համայնքը: Հետագայում, Սուլթան Համիդը, այսպես ասած հայկական «ապըստամբությունը» ճնշելու պատրվակով, հրամայել է գնդակահարել նրան քաղաքի կենտրոնական հրապարակում:

Մեր ճաշասենյակը խիստ եվրոպական ոճի էր, ի բաց առյալ պղնձյա վառարանը, որտեղ ածուխ էր վառվում, և մենք հաց էինք կարմրացնում: Պատից կախված էր Հունաստանի քարտեզը: Մենք ընթրելը անվանում էինք թեյել, որը տևում էր մեկ ժամ: Մեզնից՝ երեխաներիցս, ակնկալվում էր սեղանի շուրջ խստիվ պահպանել վարվեցողության կանոնները: Երբ վերադառնում էինք նստասենյակ, հայրս վերստանում էր իր ծալապատիկ դիրքը կրակարանի մոտ և կարդում էր «Բյուզանդիոն»-ը, որը Պոլսում լույս տեսնող պահպանողական մի օրաթերթ էր և հակառակ էր մեր հեղափոխական տաքգլուխներին: Լինելով ձախողված ուսուցիչ, հայրս հավատում էր, որ գիտությունների մայրը մաթեմատիկան է: Լավ դաստիարակության մյուս երկու պայմանները, ըստ նրա, հունարեն և երաժշտություն իմանալն էին: Նա քրոջս՝ Նվարդին ուղարկում էր հունական դպրոց, մի բան, որ վիրավորական էր հայկական համայնքի համար, որը հպարտ էր իր դպրոցներով, իսկ եղբայրս՝ Օնիկը հունարեն մասնավոր դասեր էր առնում: Նվարդը սովորում էր դաշնամուր, Օնիկը՝ ջութակ: Ես շատ փոքր էի:

Գիշերները հայրս մեզ համար ջութակ էր նվագում և հոգևոր երգեր երգում: Եվ կամ՝ վեր էր կենում, սկսում էր ոտքը գետնին խփելով և բազուկները շարժելով չափ տալ և ղեկավարել մեզ, որպեսզի երգենք իր նախասիրած երգերը: Երբ հյուրեր էինք ունենում, մի բան, որ հաճախ էր պատահում, համերգային ամբողջ մի ծրագիր էր իրագործում ֆրանսիական ոճով կահավորված մեր հյուրասենյակում, որի կահկարասիներից մի մասը Փարիզից էր ներմուծված: Օնիկը ջութակ էր նվագում, Նվարդը ընկերակցում էր նրան, իսկ ես բարձրանում էի մի աթոռի և ամենաբարձր ձայնով արտասանում: Ավելի ուշ, կանայք և երեխաները քաշվում էին նստասենյակ և տղամարդկանց առանձին էին թողնում, որպեսզի նրանք թղթախաղով զբաղվեն: Հայրս աղմկոտ խաղացող էր, տարվում էր կատակներով և կորցնում խաղը. նա գտնում էր, որ այդպես պետք է վարվի կարգին հյուրընկալը: Կեսգիշերին թեթև ճաշ էր մատուցվում: Տոնական հատուկ օրերին հայրս վարձում էր եվրոպական մի նվագախումբ, հյուրերը վալս ու կադրիլ էին պարում, և արկղներով շամպայն սպառում:

Այժմ Տրապիզոնում, ինչպես նաև Էրզրումում, Վանում, Մուշում, Բիթլիսում, Սասունում, Կիլիկիայում, Մուսա լեռան շուրջը գտնվող գյուղերում և Կարսում այլևս հայեր չկան:

*Անգլ. թարգմ. ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆԻ*



# ՀԻՇԵԼՈՎ ԱՆՑՅԱԼԸ

Մի անգամ մեզ՝ մի խումբ հին պիոներների, հրավիրել էին պիոներական հավաքի:

Հրավիրատոմսի վրա գրված էր, որ մեզ հրավիրում են պիոներական խարույկի: Մինչ այդ մենք գիտեինք, որ խարույկը վառում են բաց տեղում, բնության մեջ, իսկ հրավիրատոմսում հասցեն նշված էր ակադեմիայի հին շենքի (Աբովյանի վրա) դահլիճը: Ինչևիցե, գնացինք իհարկե: Պարզվեց, որ խարույկ անունը պայմանական էր, հավաքը նվիրված էր դպրոցներում պիոներական աշխատանքների թերություններին և նրանց դեմ պայքարելու միջոցներին և, մասնավորապես, մեծահասակ պիոներների կողմից հոկտեմբերիկներին օգնելու հարցերին:

Մեկը մյուսի հետևից ակադեմիայի ամբիոնն էին բարձրանում միջին դասարանների աշակերտներ, նույնիսկ՝ հոկտեմբերիկներ, և խոսում էին այնքան վարժ, խելացի, հանգիստ, առանց հուզվելու, շտապելու, նախօրոք գրված կոնսպեկտներով... և ինձ մի րոպե թվաց, թե ես գտնվում եմ գիտությունների ակադեմիայի հերթական նիստերից մեկում, և որ ելույթ ունեցողները ո՛չ թե պիոներներ են, երեխաներ, այլ ալեխառն ակադեմիկոսներ, որոնք խոսում են փիլիսոփայության, աստղաբաշխության և այլ համաշխարհային պրոբլեմների և ոչ թե հոկտեմբերիկների մասին... Նայեցի դահլիճում նստած հոկտեմբերիկների, պիոներների դեմքերին, նրանք հորանջում և քնում էին, նայեցի ընկերներիս՝ Ադոյանի, Խաչեյանի, Մանասյանի տխուր դեմքերին, իսկ ռեկուցումների և ելույթների վերջը չէր երևում: Խոսում էին այն մասին, որ մեծահասակ պիոներները (նամանավանդ տղաները) պիոներական փողկապ կապում են լավագույն դեպքում միայն դպրոցում և հավաքույթներին, իսկ դրսում հանում են, որ հավաքույթներին բոլորը չեն գալիս, փոքրերին չեն օգնում, հավաքույթները անցնում են անհետաքրքիր և այլն...

Հիշեցի, թե ինչպիսի խանդավառությամբ և հպարտությամբ էինք մենք կրում կարմիր փողկապը, ինչպես տուն չէինք ուզում գնալ մեր ակումբից, պարապմունքներից, ինչպիսի հոգատարությամբ էին շրջապատված մեծերի կողմից հոկտեմբերիկները... Իսկ հնարավորությունները այն ժամանակ ավելի քիչ էին, հարմարանքները՝ նվազ:

Մի ֆուտբոլի գնդակ ունենալը մեծ բան էր համարվում, ամբողջ կազմակերպությունը մի դահլիճ ուներ միայն... Իսկ այժմ՝ պիոներ-պալատ, ինչպիսի՜ հարմարություններով, դահլիճներ՝ ամեն մի դպրոցում, ստադիոններ, լողավազաններ, ճամբարներ բոլոր հարմարություններով... ո՞ր մեկն ասեմ և այդ բոլորով հանդերձ, տխուր, միապաղաղ զեկուցումներ այն մասին, թե ինչպես աշխուժացնել պիոներական հավաքույթները:

Ինչո՞ւմն է գաղտնիքը, ի՞նչն է այդ թերությունների պատճառը: Թերևս հենց այն, որ այժմ պիոներների համար ամեն ինչ արվում է առանց նրանց ջանքերի:

Պատանի հանդիսատեսի թատրոնում անվանի դերասանները նրանց համար ներկայացումներ են բեմադրում, տիկնիկային թատրոնը տիկնիկներ խաղացնում, ամառը Ծաղկաձորի ճամբարն են գնում փափուկ ավտոբուսներով և նրանց սպասարկում են այնտեղ լավագույն խոհարարներ և այլ մասնագետներ:

Ես դեմ չեմ այդ բոլորին, թող լինեն բոլոր այդ հարմարությունները, բայց թող լինի և նախաձեռնություն, ինքնագործունեություն, լինեն դժվարություններ, որոնց հաղթահարելու ընթացքում է կոփվում մարդը, նրա բնավորությունը, հիշենք Վախթանգ Անանյանի «Հովազաձորի գերիները» վիպակը, որտեղ այդ միտքը շատ գեղեցիկ է պատկերված:

Մենք ճամբար էինք գնում ոտքով, բեռնված մեզ անհրաժեշտ իրերով, վրաններ էինք պատրաստում ինքնագործ միջոցներով, քնում էինք խոտի վրա, ճաշը պատրաստում ինքներս: Դժվար էր, բայց և հետաքրքիր, սովորում էինք անհրաժեշտ շատ բաներ, որոնք, թվում է, թե շատ հեշտ են, բայց տեղն եկած՝ պարզվում է, որ չգիտես: Մեծ տեղ էին բռնում մեր կյանքում ռազմական խաղերը: Հաճելի էին դրանք հատկապես տղաների համար և կարող էին պետք գալ կյանքում: Մինչդեռ հիմա դրանք դուրս են մղվել պիոներական կյանքից և գուցե նաև այդ է պատճառը, որ տղաները պասսիվ մասնակցություն են ունենում պիոներական աշխատանքներին:

Այս մի հոդվածում հնարավոր չէ մանրամասն խոսել բոլոր խնդիրների մասին, բայց մի բան հաստատ կարող եմ ասել, որ անհրաժեշտ է ուժեղացնել նախաձեռնությունը և ինքնագործունեությունը, ու թող լինեն դժվարություններ և պայքար նրանց դեմ, թող չլինեն խարույկներ դահլիճներում և կոնսպեկտներ՝ հոկտեմբերիկների ձեռքերում, թող լինեն նաև ռազմական խաղեր, որ պիոները լինի կոփված, հնարագետ ու համարձակ:

Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

## ԴՊՐՈՑՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՀՐԱՇՔ ՔԱՐԱՆՁԱՎԸ

Դպրոցը Նորքի բարձունքում է, զառիթափ, անտառապատ սարալանջի խաղաղ մի անկյունում: Երբ մեքենաների միալար հոնդյունի ուղեկցությամբ մտնում ես դպրոցի բակն ու քայլում ծառերի չոր ճյուղերով երիզված, անտառային արահետներ հիշեցնող նեղ ճանապարհներով, մի պահ կանգնում այս ու այն կողմի վրա անչափ բնական ձևով կառուցված լճակների կողքին, առնում հողի ու խոտի թարմ բույրը՝ թվում է ո՛չ թե քաղաքում ես, այլ հեռու ինչ-որ տեղ: Ամեն ինչից երևում է հոգատար, բնության լեզուն հասկացող, հմուտ ձեռքերի կատարած գործը:

Երևանի №22 գիշերօթիկ դպրոցի պատանի բնասերների մասին արժե, որ բոլորը գիտենան: Նրանց արած գործերը, հետաքրքիր են, գրավիչ և օրինակելի: Դպրոցի տեղանքը կարգավորելն ու ձևավորելը՝ գործի միայն մի մասն է: Նրանց պարծանքը «Կենդանի անկյունն» է: Դպրոցի բակում է գտնվում նրանց փոքրիկ գազանանոցը: Ընդարձակ վանդակների մեջ բնակություն են հաստատել վայրի այծերն ու վայրի ոչխարները: Իսկ գորշ եղջերուն այս տարի ձագ է բերել. իր նման գորշ, իր նման վախկոտ ու գեղեցիկ մի ձագ: Քիչ հեռու թռչուններն են՝ հայկական և ուկրաինական փասիաններ, կաքավներ, լորեր, որոնք ձու են դնում, աճում, բազմանում:

Դպրոցի «Կենդանի անկյան» ղեկավար Ս. Սարդարյանը քիչ է խոսում: Դե, ինչ պիտի ասի, երբ աչքիդ առաջ է այն ամենը, ինչի մասին ինքը պիտի պատմեր: Նա ակնկալիքներով է խոսում հետագա գործերի մասին: Մտադիր են դպրոցի բակում անտառի բնակիչների համար ձմեռանոց շինել: Յուրահատուկ մի շինություն է լինելու այդ: Հաջորդ տարի կսկսեն...

Իսկ առայժմ ջերմասերները տեղավորված են դպրոցի ներսում: Շենքի առաջին հարկում կապույտ գույնով ներկված սովորական մի դռան վրա գրված է «Կենդանի անկյուն»: Մտնում ես ներս և աչքերիդ առաջ բացվում է հրաշքը՝ անչափ բնական, բայց հազվադեպ պատահող մի քարանձավ, իր առանձնահատուկ ու հեքիաթային մթնոլորտով: Զարմանալի երևակայության տեր մարդ է եղել այդ հրաշք քարանձավի մտահղացողը: Հսկայական մի սրահի մեջ կապել են բետոնե հեծաններ, այնուհետև այն ծեփել, և այդ ամենը արել այնքան հմուտ և շնորհալի ձևով, որ աչքերը փակ այդտեղ մտած մարդը հազիվ թե կասկածի նրա բնական չլինելու վրա: Մանավանդ, որ մեծ վարպետությամբ է լուծված նաև քարանձավի ծալքերի ու խորությունների լուսավորման հարցը՝ լույսի ու ստվերի խաղը:

Քարանձավի խոռոչների մեջ տեղավորված են բազմաթիվ ակվարիումներ, ուր աճում ու շատանում են տաքջրային ձկների մի քանի տեսակներ: Ջրաբույսերի առատությունը, գույնզգույն ձկների խաղը, թույլ կանաչ լուսավորումով անկրկնելի տեսք են տալիս կիսամութի մեջ թաղված քարանձավին:

Իսկ դիմացի վանդակապատ մասում ճովողում են թութակները, չորացած ծառի ճյուղերի վրա հանգստանում են արքայական սիրամարգերը: Կարծես հեքիաթ լինի, իրական ու անչափ հրաշալի մի հեքիաթ:

Դպրոցի դիրեկտոր Ս. Արաբյանի ինքնատիպ երևակայության արդյունքն է այդ ամենը, նրա անմիջական ղեկավարությամբ էլ կատարվել է ողջ աշխատանքը: Իսկ գործը այնքան էլ հեշտ չի եղել. պահանջվել է համբերություն և արդյունքի հասնելու տևական ձգտում: Բնագիտության ուսուցչուհի Ա. Սահակյանը երբ սկսել է պարապմունքները, պարզվել է, որ կենդանիների աշխարհով ու բնության գաղտնիքներով հրապուրվողները շատ են: Ու այդպես տարիների ընթացքում գործը կամաց-կամաց կազմավորվել ու առաջ է գնացել:

Դպրոցի պատանի բնասերները բարեկամական կապի մեջ են գտնվում Երևանի կենդանաբանական այգու հետ, որտեղից էլ ձեռք են բերել իրենց փոքրիկ գազանանոցի բնակիչներին:

Դպրոցը մտնում է Երևան ժամանող զբոսաշրջիկներին ցուցադրվող տեսարժան վայրերի ծրագրի մեջ: Հյուրերն հիացմունքով ու անակնկալ զարմանքով են հեռանում այդտեղից, հատկապես մեծ տպավորություն է թողնում հրաշք քարանձավը: Զբոսաշրջիկների լավ սպասարկման համար դպրոցը արժանացել է համամիութենական մրցանակի: Այդպիսի պատվի քչերն են արժանանում:

*ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ*




## ՀՆԱՐԱՎՈ՞Ր Է, ԱՐԴՅՈՔ, ԼՍԵԼ ՌԱՖԱՅԵԼԻ ԿԱՄ ԷԼ ԳՐԵԿՈՅԻ ՁԱՅՆԸ

*Իհարկե, ոչ, իսկույն կասեք դուք: Չէ՞ որ նրանք ապրել են մեզնից մի քանի հարյուր տարի առաջ, երբ չկային ձայնագրման սարքեր: Ճիշտ է, դուք չեք սխալվում: Բայց բանն այն է, որ երբ նկարիչը վրձինով ներկ է քսում կտավին և խոսում, ներկի վրա դրոշմվում են ձայնային ալիքները: Վրձնահարվածները խոշորացնելու դեպքում, կարելի է նրանց վրա տեսնել ալիքաձև անհարթություններ: Դրանք էլ համրացած ձայնային ալիքներն են:*

*Այժմ մեծ աշխատանք է կատարվում անցյալի ձայները, երաժշտությունը վերարտադրելու ուղղությամբ, որոնք մնացել են տարբեր նյութերի մակերեսների վրա կամ ներսում: Փորձերը ցույց են տալիս, որ սկզբունքորեն հնարավոր է այդպիսի վերարտադրությունները:*

## ԲԱՐՁՐԱՁԱՅՆ ՄՏԱԾՈՂ ԵՐԵԽԱՆԵՐԸ

ԳԴՀ-ի մանկապարտեզներից մեկում հետաքրքիր փորձ կատարվեց. չորս տարեկան երեխաներին երկու խմբի բաժանեցին. մի խմբի հետ սովորական ձևով էին պարապմունք անցկացնում, իսկ մյուս խմբի երեխաներին սովորեցնում էին բարձրաձայն մտածել, այսինքն, ստիպեցին ասել, թե ինչ են անում տվյալ պահին կամ ինչ են ուզում անել: Որոշ ժամանակ անց այդ խմբերի համար քննություն կազմակերպեցին, առաջարկելով խնդիրներ ու հարցեր: Բարձրաձայն մտածող երեխաները ավելի շուտ լուծեցին խնդիրները, ավելի արագ պատասխանեցին հարցերին, ցույց տվեցին մեծ հնարամտություն և կարողացան ճիշտ ձևակերպել իրենց մտքերը:




*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԱՏՈՄԱԿԱՅԱՆԸ

Իններորդ հնգամյակում բարձրանալու են մեր հանրապետությունում մի շարք նոր հսկա կառույցներ, որոնցից մեկը հայկական ատոմային էլեկտրակայանն է: Մեր ծանոթությունը այդ կառույցների հետ հենց ատոմային էլեկտրակայանից էլ սկսենք:

Հայկական ատոմակայանի հիմքը դրվեց 1969 թվականի հոկտեմբերին՝ Արարատյան դաշտի քարուտներում, Սև ջրի ափին խփվեց առաջին վրանը: Իսկ հետո շինարարների համար կառուցվեց ժամանակավոր բանավան: Այստեղից ամեն առավոտ նրանք գնում են կառուցելու լույսի հզոր կայանը:

Կայանն ունենալու է երկու էներգաբլոկ, որոնք աշխատելու են դանդաղ նեյտրոններով: Ատոմային ռեակտորում առաջացող ջերմաէներգիան օգտագործվելու է երկկոնտուր սխեմայով: Ցելսիուսի ավելի քան 300 աստիճան տաքությամբ ջուրն առաջին կոնտուրով մատակարարվելու է շոգեգեներատորին և սառչելուց հետո վերադառնալու ռեակտորի մեջ: Այդ գործողության ընթացքում կառաջանա 45 մթնոլորտ ճնշման տակ հագեցած շոգի, որը երկրորդ կոնտուրի միջով կանցնի 220-հազարական կարողությամբ երկու տուրբինային ագրեգատներին: Դրանցից ամեն մեկը կպտտեցնի մի տուրբինային գեներատոր: Արտադրված էներգիան տրանսֆորմատորների միջոցով կհաղորդվի բացօթյա էլեկտրաենթակայանին, իսկ այնտեղից լուսե երակները կձգվեն Հայաստան երկրով:

Երկու տարի է անցել, և ատոմայինների քաղաքի մի հատվածն արդեն պատրաստ է: Առաջին շենքերում լույսեր են վառվում: Մի քանի կիլոմետր վեր երևում են ատոմակայանի հենասյուները:

Կայանը կառուցում են Հայաստանի լավագույն հիդրոշինարարները, նրանք, որոնց ձեռքերով բարձրացել են մեր բոլոր հզոր լույսի կենտրոնները: Մասնագետներ են եկել նաև եղբայրական հանրապետություններից: Ատոմակայանը բարեկամության կառույց է: Խորհրդանշական է, որ լույսի կայանը բարձրա-

Ի նշանավորումն Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության 50-ամյա տարեդարձի, «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է մանկական ստեղծագործության

## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

*Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել բոլոր պատանի ստեղծագործողները իրենց այն ստեղծագործություններով, որոնք կարտացոլեն մեր պիոներ-դպրոցականների բազմաբովանդակ առօրյան, նրանց լավագույն գործերը, պիոներական հարուստ տրադիցիաները:*

*Մրցանակաբաշխությունում հաղթողները կպարգևատրվեն հանրապետական պիոներական խորհրդի պատվոգրերով, Արտեկ համամիութենական պիոներական ճամբարի ուղեգրերով և հուշանվերներով:*

*Մրցանակ շահած լավագույն ստեղծագործությունները կտպագրվեն մեր ամսագրում:*

*Նյութերը պետք է ներկայացնել մինչև 1972 թ. մայիսի 19-ը, պիոներիայի տարեդարձի օրը, խմբագրության հասցեով:*

---

նում է մեր հայրենիքի տարբեր ազգերի կավակների ձեռքերով:

Երկաթուղին արդեն մոտեցել է կայանի մատույցներին: Շինարարական հսկա հրապարակները պատրաստ են ընդունելու մեխանիզմները: Տասնյակ հզոր վերամբարձներ օրնիբուն անդուլ աշխատում են: Կառուցման ընթացքի մեջ են գլխավոր մասնաշենքը՝ ատոմակայանի սիրտը, էլեկտրական ենթակայանը, քիմիական մաքրման կայանը և տասնյակ այլ օբյեկտներ:

*ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*



**ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ**

**Խնդրում ենք գրեք, թե այս համարի նյութերից որը ձեզ դուր եկավ և ինչի մասին կուզենայիք կարդալ հաջորդ համարներում:**

**«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1972 թ.

**ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

---

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 06324: Պատվեր 216: Տպաքանակ՝ 76100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 2/III 1972 թ.:
ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ ԻՆԴԵՔՍ՝ 77806




## ԽԱՉԲԱՌ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | | | | | | | | |
| 2 | | | | | | | | |
| 3 | | | | | | | | |
| 4 | | | | | | | | |
| 5 | | | | | | | | |
| 6 | | | | | | | | |
| 7 | | | | | | | | |
| 8 | | | | | | | | |
| 9 | | | | | | | | |

1. Անդերի ամենաբարձր գագաթը։
2. Կենտրոնական Ասիայի նշանավոր հետազոտող։
3. Ծով՝ Եվրոպայում։
4. Թերակղզի՝ Եվրոպայում։
5. Արշիպելագ՝ Օվկիանիայում։
6. Օվկիանոս։
7. Կղզի՝ փոքր Անտիլյան արշիպելագում։
8. Պետություն՝ Աֆրիկայում։
9. Կղզային պետություն՝ Ասիայում։

Պատասխանները ճիշտ լրացնելու դեպքում, անկյունագծով կկարդաք Լատինական Ամերիկայում գտնվող պետության անվանումը։

Կազմեցին՝
ՎԱՉԵ ԴԱՆՂՅԱՆԸ ԵՎ
ԳՐԻԳՈՐ ԴԱՎԹՅԱՆԸ



Գտեք, թե որ շնիկն է կապված։

## ՌԵԲՈՒՍ

